# ԼԵՆԻՆԻ ՆՄԱՆ...





## ՍՈՎՈՐԵԼ



Գարուն էր, ապրիլ, փթթում էր բնությունը, երբ ծնվեց հռաշալի մանուկը՝ Վոլոդյան. Նրա պատկերն էր գծված այն կարմիր աստղիկի վրա, որը կրելու բախտին դու արժանացար, երբ դարձար հոկտեմբերիկ։ Հետո դու շատ գրքեր կարդացիր Լենինի մասին, երգեր, ոտանավորներ սովորեցիր։ Հիմա դու պիոներ ես, պատանի լենինյան։ Եթե դու լավ ես սովորում, սիրով օգնում ես մեծերին, հոգատար, զգայուն ընկեր ես, սիրում ես աշխատանքը, պատրաստվում ես դառնալու քո Հայրենիքի արժանի զավակը,—մարդիկ հպարտությամբ անվանում են քեզ պատանի լենինյան։ Այդ նշանակում է՝ սովորում, ապրում և աշխատում ես Լենինի նման։

Այս նշանաբանով է ընթանում համամիութենական Լենինյան ստուգատեսը, որին մասնակցում են երկրի բոլոր պիոներական դրուժինաները։ Լենինի անունը քեզ՝ պատանի լենինյանիդ, կոչում է դեպի աշխատանք, դեպի գիտություն, դեպի կոմունիզմ։ Իսկ աշխատանքը, ինչպես հայտնի է, սիրում է աշխատասեր մարդուն, գիտության ճանապարհը լայն, սյունազարդ ճանապարհ չէ, այլ քարքարոտ է և փշոտ. համառություն, աշխատասիրություն, գիտելիքներ են պետք նրան, ով իրեն նվիրում է գիտությանը։ Կոմունիզմի ճանապարհը մեծ, ազնիվ աշխատանքի, գիտական մտքի համարձակ թռիչքների ճանապարհ է, և միայն նա կարող է այդ ճանապարհով առաջ ընթանալ, ով իսկական լենինյան է։

Նայի՛ր քո շուրջը, և կտեսնես, թե ինչպես են միլիոնավոր իսկական լենինյանները կերտում կոմունիստական վաղը։ Հենց թեկուզ կոմունիստական աշխատանքի բրիգադի անդամները։ Ժողովուրդը նրանց անվանում է ապագայի հետախույզներ։ Իսկ քո «7-ամյակի արբանյակ-ջոկա՞տը»—չէ՞ որ դու և քո ընկերները նույնպես բարձր պարտավորություններ եք վերցրել՝ ուսման մեջ, աշխատանքում, անձնական կյանքում լինել ամենաօրինակելին...Յուրաքանչյուր պատանու և աղջկա երազանքն է՝ դառնալ «7-ամյակի արբանյակ-ջոկատի» պիոներ։

Եվ հիմա, լենինյան ստուգատեսի այս օրերին, յուրաքանչյուր պիոներական ջոկատ պայքարում է այդ պատվավոր կոչմանն արժանանալու համար։

Երևանի № 77 դպրոցի պիոներները դպրոցում ստեղծել են լենինյան թանգարան։ Այստեղ կարելի է տեսնել Լենինի կյանքը պատկերող նկարներ, Լենինի սիրած երգերի տեքստերը՝ «Դու զոհ գնացիր», «Անվախ ընկեր», «Վարշավյանկա»։ Ահա և Լենինի սիրած գրքերը՝ «Տարաս Բուլբան», «Իմ համալսարանները», «Կյանքի սերը», «Քեռի Թոմասի տնակը»։ Ալեքսանդր Մատրոսովի անվան «7-ամյակի արբանյակ-ջոկատի» պիոներները համառ որոնումներ կա-

№ 4 1960 թ.

ԱՊՐԻԼ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ

32-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

տարեցին փոստային բաժանմունքներում, ուսումնասիրեցին ամսագրերն ու թերթերը, նամակներ գրեցին իրենց հեռավոր բարեկամներին՝ Ուլյանովսկ, Կազան, Լենինգրադ, Մոսկվա, Պրագա, Բեռլին և կազմեցին փոստային դրոշմանիշների հիանալի մի կոլեկցիա։ Նրանք կազմակերպեցին լենինյան դրոշմանիշների ցուցահանդես։

Պիոներական սենյակում երեխաները ստեղծել են ինտերնացիոնալ անկյուն։

Ջոկատները ճանապարհորդում են մեծ Լենինի անունը կրող վայրերով։

ստեղծվել Շուշենսկոյե գյուղի պիոներների և Երևանի Օրջոնիկիձեի անվան դպրոցի աշակերտների միջև։

Ապրիլի 22-ին՝ Վլադիմիր Իլյիչի ծննդյան օրը, պիոներական կազմակերպությունների քաղաքային ու շրջանային խորհուրդները կամփոփեն մրցության արդյունքները։

Ո՞վ կնվաճի առաջնությունը, ո՞ր պիոներական դրուժինաները կպարգևատրվեն Ռեսպուբլիկական Խորհրդի պատվոգրերով, ու՞մ բախտ կվիճակվի մեկնել Վ. Ի. Լենինի անվան «Արտեկ» ճամբարը. այս հարցերը հուզում են շատ-շատերին։

Առաջնությունը կնվաճեն նրանք, ովքեր իսկապես սովորում, ապրում և աշխատում են Լենինի նման։ Նրանք էլ ամբողջ ձայնով, հպարտությամբ կզեկուցեն իրենց աշխատանքների մասին, այնպես բարձր, որ լսեն բոլորը, լսի ամբողջ երկիրը...

## ԱՊՐԵԼ,



## ԱՇԽԱՏԵԼ...



Պատանի արտիստները բեմադրում են «Ընտանիք» պիեսը։

Աշակերտները պատրաստել են լենինյան **շալաշ-ի** պլանի մակետը։ Շատ ջերմ նամակագրություն է



# ԼԵՆԻՆԸ ԿԱՇԻՆՈՅՈՒՄ

ՀԱԿՈԲ ԴՈՒՐՈՒՆՅԱՆ

Մերձմոսկովյան Կաշինո գյուղի բնակիչները համատեղ մի փոքրիկ էլեկտրակայան կառուցեցին։ Դա Ռուսաստանի առաջին գյուղական էլեկտրակայանն էր։ Այդ բանում նրանց օգնեց Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Էլեկտրակայանի բացման ուրախալի տոնին կաշինցիները հրավիրեցին նաև Լենինին։

1920 թվականի նոյեմբերի տասնչորսն էր։ Լենինը Նադեժդա Կոնստանտինովնայի հետ ավտոմեքենայով մտավ Կաշինո գյուղը։

Մեքենան առաջինը նկատեցին երեխաները և ընդառաջ վազեցին։

Լենինը կանգնեցրեց մեքենան և հարցրեց.

— Տղերք, որտե՞ղ է ձեր էլեկտրակայանը։

Երեխաները մատնացույց արեցին, թե որ կողմն է էլեկտրակայանը, իսկ Վանյան, որին տղաները Շիկահեր էին անվանում, առաջ եկավ և համարձակ ասաց.

— Քեռի՛, մեզ մեքենա նստեցրու, մենք ցույց կտանք տեղը։

Այդ առաջարկությունը դուր եկավ Լենինին և նա երեխաներին տեղավորեց մեքենայի մեջ։

Մեքենան դանդաղորեն առաջ շարժվեց։ Ներսում նեղվածք էր։

Երեխաները, ցրտից կարմրատակած, քիպ նստել էին և շնչելիս գոլորշի էին արձակում։ Մեջտեղը նստել էր Լենինը՝ ձմեռային վերարկուով, ականջավոր փափախը գլխին, իսկ կողքին՝ Նադեժդա Կոնստանտինովնան։

Առաջինը խոսեց Շիկահերը՝ Վանյան։ Նա հարցրեց Լենինին.

— Քեռի՛, ասում են, թե Լենինը այսօր միտինգի է գալու, ճի՞շտ է։

— Արդեն եկել է,— պատասխանեց Լենինը և ժպտաց։

Նադեժդա Կոնստանտինովնան քնքշորեն շոյեց Շիկահերի գլուխը։

— Բա ինչո՞ւ մենք չտեսանք։

— Դուք արդեն տեսել եք։

— Չէ՛, քեռի՛, չենք տեսել։ Թե ուրիշ ճամփով է եկել, այդ չգիտեմ։ Լենինը ուշադիր նայում էր տղաներին և հրճվում։

Խոսքի մեջ մտավ Շիկահերի կողքին նստած ծիծաղերես Վիտյան.

— Քեռի՛, դուք ո՞րտեղից եք գալիս։

— Մոսկվայից։

— Ուրեմն Լենինին տեսած կլինեք։ Երկարահասա՞կ է։

Լենինը և Նադեժդա Կոնստանտինովնան ծիծաղկոտ հայացքներ փոխանակեցին, իսկ վարորդն առանց ետ նայելու, շարունակ ժպտում էր։

— Ճիշտ և ճիշտ իմ հասակին,— ասաց Լենինը։

Մի նիհար պատանի հարց տվեց.

— Քեռի՛, պատերազմը ե՞րբ է վերջանալու։

— Շուտո՛վ, տղե՛րք, շուտո՛վ։ Վրանգելն էլ արդեն գլուխկոնծի է լինում ծովի մեջ, որ ձուկ որսա։

Բոլորը ծիծաղեցին։

— Լենինի Կարմիր Բանակը սպիտակներին՝ Կոլչակի-Մոլչակի հորը գցեց՝ որ թթու դառնան,— ասաց Շիկահերը՝ դեմքին ծաղրական արտահայտություն տալով։

— Որ ո՞վ ուտի,— իրեն լուրջ ձևացրեց Լենինը։

— Հո՛ղը, քեռի՛, հո՜ղը ուտի։

Նոր ծիծաղ բռնկվեց։

Աջ կողմը հանգիստ նստած մի խիստ դեմքով երեխա, մեծ մարդու լրջությամբ ասաց.

— Լենինը շատ ուժով քեռի է։ Հերս ասում է՝ մեր բոլոր գյուղացիներին էլ նա է հող տվել։

Լենինը լրջացավ, ծիծաղից արցունքոտված աչքերը սրբեց և, մտքերի մեջ ընկած, բացականչեց.

— Ռուսաստա՜ն, Ռուսաստա՜ն, ինչքա՜ն ես փոխվել և դեռ ինչքա՜ն պիտի փոխվես...

Ապա նայեց շուրջը և մի քանի խրատական խոսք ասաց.

— Տղե՛րք, բոլորդ էլ գիտեք, որ էլեկտրական լույսը շատ լավ բան է։ Որ մեծանաք, ամբողջ Ռուսաստանը ողողեցեք էլեկտրական լույսով։ Հը՞, լավ չի՞ լինի, ի՞նչ կասեք։

— Քեռի՛, թե մեզ ետ գնալիս էլ տանեք, բոլորս կասենք, թե ի՞նչ ենք ուզում դառնալ,— ասաց Շիկահերը։

— Ի՜նչ լավ կլինի...

— Հա՜, հա՜, քեռի՜...— Արձագանքեցին տարբեր կողմերից։

Մեքենան տեղ էր հասել արդեն։

— Կտանե՛նք, իհա՛րկե, կտանե՛նք,— ասաց Լենինը և իջավ մեքենայից։

Կաշինցիները ուրախ-ուրախ շրջապատեցին Լենինին և ջերմ զրույց ունեցան։



Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

Վերջապես, Լենինը ամբիոն բարձրացավ և սկըսեց խոսել։

Լենինի հետ մեքենա նստած երեխաներն ապշել էին... Նրանք իրենց աչքերին չէին հավատում։ Իրար էին փաթաթվում և ուրախանում, որ Լենինի հետ մինչև անգամ մեքենա են նստել ու հետաքրքրաշարժ զրույց ունեցել։

— Ինչպե՜ս գլխի չընկանք, որ Լենինն է...— զարմանում էր Շիկահերը։

— Ա՜խ, ինչո՞ւ չասացի, որ օդաչու դառնալ եմ ուզում։

— Իսկ ես՝ շոֆեր...

— Ես՝ ինժեներ...

— Ես հոյս նման գլոզ եմ բշելու։

Բոլորն էլ բլբուլ դարձած՝ իրար ասում էին, թե ինչ են ուզում դառնալ։

Միտինգը վերջացավ։ Երեխաներն այս անգամ չէին համարձակվում մոտենալ Լենինին և թաքնվում էին մարդկանց արանքներում։

Մեկնելու պահին Լենինը հիշեց երեխաներին տված իր խոստումը։ Շատ նայեց շուրջը, հայացքով փնտրեց նրանց, բայց չգտավ։

— Միևնույն է, մի օր ես ձեզ կյանքում կհանդիպեմ, իմ զվարճասե՜ր երեխաներ։

Լենինը աչքերը կկոցելով ժպտաց։ Ապա հրաժեշտ տվեց իրեն խիտ-խիտ՝ շարքերով շրջապատած կաշինցիներին և բարձրացավ մեքենա։

# ԼԵՆԻՆ

ՍՄԻԼ ԿԱԴԱՐԻ

(Ալբանացի բանաստեղծ)

Ինչքան եմ խորհել Իլյիչի մասին
Ու փնտրել կյանքում շիկացած բառեր,
Բայց իմ երգերում, որպես ջինջ ալմաստ,
Սակավ է փայլել այդ անունն հրե։
Չէ՞ որ նա պիտի շողար, ինչպես այգ,
Ապրեր հողմերում՝ ցուրտ և ալեկոծ
Ու մրրիկներում մեծ Հոկտեմբերի
Քայլեր դրոշի ծփանքի ներքո։
Եվ այրել եմ ես իմ երգերն հաճախ,
Քանզի չեն ապրել փոթորիկն ահեղ,
Շնչել են կանաչ խոտի բույրն անուշ,
Գերել է նրանց մի նեղ արահետ։

Բայց թող Լենինը հավիտյան ապրի
Ոսկի դաշտերում՝ ծանոթ ինձ մանկուց.
Թող քայլի գյուղի խաղաղ փողոցով
Ու լսի կաղնու սոսափը քնքուշ։
Նա Հոկտեմբերյան հողմերի միջով
Անցել է հպարտ՝ օրերում դաժան.
Բայց ո՞վ է սիրել Լենինի պես դեռ
Գյուղական բակի անդորրն անսահման։
Նա բանաստեղծի նուրբ հոգի ուներ,
Սիրում էր գարնան այգը ոսկեոր,
Գերում էր նրան մայրամուտը վառ
Ու կապույտ լճի հարթությունն անդորր։

Երբ արշալույսի միգապատ արփին
Հիշեցնում էր Ռուսաստանը նոր,
Իսկ մայրամուտի հրդեհն հրավառ
Դառնում էր ասես արնաներկ զինվոր։

Իրիկնամուտին, երբ գունատ հեռվում
Հանգչում էր դանդաղ արևը բոսոր,
Լենինը գիտեր, որ երկրի վրա
Ծագում է անմար լուսատու մի նոր։

Ռուս. թարգմ. ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ

# ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ԿԱԴՆԻՆ

ՊԱՎԼՈ ՄԱԿՐՈՒՇԵՆԿՈ

Պատմվածք

Նկ. Կ. ՌՈՒԽԿՅԱՆԻ

Պետրոգրադում սպիտակ գիշերներ են։ Դեռ արևը մայր չմտած, արևելքում շառագունում է արշալույսը։ Արևը ոչ պառկում է քնելու, ոչ էլ թույլ է տալիս, որ մութ գիշերը քաղաք մտնի։ Սպիտակ գիշերներին մարդիկ տներում լույս չեն վառում։

Ահա այսպիսի մի գիշեր, 1917 թվի հուլիս ամսին, Վլադիմիր Իլյիչ Լենինը ստիպված էր թողնել քաղաքը՝ ժամանակավոր բուրժուական կառավարության լրտեսներից թաքնվելու համար։ Բուրժուական կառավարությունը ցանկանում էր ձերբակալել Լենինին և բանտ նստեցնել։

Մեծ դժվարությամբ բանվորներին հաջողվեց Լենինին հասցնել կայարան, քանի որ չորս կողմը չափազանց լույս էր։ Բացի այդ՝ կայարանում էլ վխտում էին յունկերները, որոնք փնտրում էին Վլադիմիր Իլյիչին։ Պրոլետարական ռևոլյուցիայի Առաջնորդին բռնելու համար բուրժուական կառավարությունը պարգև էր խոստացել 200.000 ռուբլի ոսկով։

Վլադիմիր Իլյիչը Ռազլիվ կայարան հասավ լուսաբացին։

Լճի վրա սփռվել էր արշալույսը։ Անդրադարձած արևը նայում էր խորքից, և ասես տարացած ջուրը ծածկված էր առավոտյան մշուշով։ Բայց այստեղ էլ, քաղաքի իրարանցումից հեռու, անհանգիստ էր։ Լճի այն կողմը, անտառում խուլ բվում էին բվեճները, ճահիճներում տագնապով կռկռում էին կռունկները և ինչ որ տարօրինակ թռչուններ՝ ձկնկուլներ, որոնց ժողովուրդը ջրցուլ է անվանում։ Լճի հանգիստը խռովում էին վայրի բադի ձագերը, որոնք դեռ թռչել չէին կարողանում։

Ռազլիվում Լենինը տեղավորվեց բանվոր Եմելյանովի մոտ։ Նա ածիլեց բեղերն ու մորուքը, հագավ շեկ օձիքով վերնաշապիկ, կիսաբաճկոն և

գլխին դրեց տանտիրոջ կեպին։ Նայելով հայելուն՝ Վլադիմիր Իլյիչը ժպտաց և ասաց.

— Այս տեսքով ես ինքս էլ ինձ չեմ ճանաչում։ Լավ կոնսպիրացիա ստացվեց։

Եվ դառնալով Եմելյանովի կնոջը, նա ասաց.

— Խնդրում եմ ձեզ իմ մասին ոչ ոքի ոչինչ չասել, բացարձակապես ոչ ոքի. խոսակցության ժամանակ չպաշտպանել ինձ և իմ մասին չբանավիճել։

— Մի անհանգստացեք, մենք գաղտնիք պահել գիտենք,— պատասխանեց տանտիրուհին։

Վլադիմիր Իլյիչը այդ մասին չէր կասկածում, միայն մտածում էր՝ հանկարծ երեխաները բերաններից խոսք չթռցնե՞ն, չէ՞ որ տանը յոթ երեխա կար։

Լենինը հրաժարվեց ապրել առանձին սենյակում։ Նա բնակվեց բակում գտնվող ցախատան ձեղնահարկում։ Նրան անկողին էր ծառայում հոտավետ խոտը, իսկ աշխատելու համար բերեցին տախտակներով իրար կպցրած սեղան և աթոռ։

— Ա՛յ, այստեղ շատ լավ է,— ասաց Իլյիչը,— սիրում եմ թարմ խոտի հոտը։

Ձեղնահարկի անկյուններում սարդոստայն էր կախված, դռան նեղ ճեղքերից աղոտ լույս էր թափանցում, կեսօրին օդը հեղձուցիչ էր։ Բայց Լենինը ուշադրություն չէր դարձնում անհարմարությունների վրա և համառ աշխատում էր։ Նա շատ էր կարդում և գրում։

Մի անգամ Վլադիմիր Իլյիչի ուշադրությունը գրավեց այգուց հասնող աղմուկը։ Նա լսեց, որ բանվոր Եմելյանովը հանդիմանում է իր տղաներին՝ Կոլյային, Սերյոժային և Տոլյային։

— Դուք ո՞րտեղ եք տեսել, որ ամռանը ծառեր տնկեն։

— Բայց այս կաղնու տունկը շատ լավն է,— պատասխանեցին տղաները։— Մենք ուզում ենք, որ այգում աճի։

— Դուք պարզապես փչացրել եք տունկը,— բարկացավ հայրը։— Ծառերը տնկում են միայն գարնանը և աշնանը, երբ նրանք չեն աճում։ Իսկ կաղնին ընդհանրապես չի սիրում տեղափոխվել։

— Մենք կփորձենք, գուցե և չչորանա,— պնդում էին տղաները։

— Միևնույն է, կթառամի,— ասաց հայրը։

Վլադիմիր Իլյիչը ձեղնահարկից իջավ այգի։ Նա երկար ժամանակ կիսախավարում գտնվելուց հետո, այժմ պայծառ լույսից ակամա կկոցում էր աչքերը և ձեռքի ափով պաշտպանվում լույսից։

Աստիճանաբար նրա աչքերը ընտելացան լույսին։ Լենինը նայեց չորս կողմը։ Յասամանի խիտ, կանաչ թփերը շրջապատել էին ամբողջ տնատեղը, բակը ծածկել կողմնակի հայացքներից։

— Շատ սիրուն է, լավ է մտածված,— ասաց Իլյիչը նայելով ցանկապատին։

— Երևում է պետք եղավ, իսկ ես չէի մտածել, թե պետք կգա,— պատասխանեց Եմելյանովը։

— Ինչի՞ մասին է ձեր վեճը,— հարցրեց Իլյիչը։

— Ա՛յ, տեսեք, որդիներս մատղաշ կաղնին փչացրել են։ Խելքներին փչել է ամառը զբաղվել ծառատունկով։

Տղաները լուռ նայում էին հյուրին։ Նրանք սպասում էին, թե ի՞նչ կասի նա։ Չի՞ պաշտպանելու արդյոք իրենց։

Լենինը գետնից վերցրեց տունկը, երկար և ուշադիր զննեց բոլոր կողմերից։ Գեղեցիկ նախշերով տերևները դեռ չէին թառամել, հավանաբար այն պատճառով, որ շատ կարծր էին։ Դեղին արմատիկները պատած էին մերկ և չոր մազափնջիկներով։ Մատղաշ ծառի հարթ բունը կազմված էր մի քանի տարբեր տեսակի և իրար չնմանվող հանգույցներից։ Ամենաստորինը՝ լայն և սև, ամբողջովին ծածկված էր շեղաձև ցանցով, տունկը աճել էր և պատռել կեղևը, կազմելով յուրատե-



սակ նախշ։ Երկրորդ հանգույցը, մուգ դարչնագույն էր, նրա վրա արդեն ճեղքեր քիչ կային։ Երրորդի վրա պարզ նկատվում էին նուրբ, փայլուն գծեր։ Դրանք կաղնու բունը զարդարել էին զորշ-արծաթավուն նախշերով։ Դրանցից վերև՝ անցյալ տարվա շիվը շողշողում էր դարչնագույն փայլով, վրայի կեղևը բոլորովին հարթ էր ու փայլուն։ Անտառի հյուրի գագաթը՝ գարնանային բողբոջը, արդեն կանաչել էր։ Բնի յուրաքանչյուր հանգույցից դեպի զանազան կողմեր դուրս էին ցցվել շիվերը։

Լենինը նայեց, նայեց կաղնուն և մռայլվեց։ Տղաները չէին հեռացնում նրանից անհանգիստ հայացքները։ Վերջապես, Իլյիչը մատղաշ ծառը դրեց գետնին և մտազբաղ ասաց.

— Այս կաղնին արդեն ապրել է հինգ տարի, այո, ճիշտ հինգ տարի։ Կյանքում այդ ժամանակը քիչ չէ...— Իլյիչը նայեց կուչ ու ծիգ անող տխուր երեխաներին, և ժպտալով շոյեց իրեն մոտիկ կանգնած Կոլյայի մազերը։— Չպետք է վրհատվել, ոչ, ոչ, չենք վհատվելու...

Դառնալով դեպի Եմելյանովը՝ Լենինը հարցրեց.

— Նիկոլայ Ալեքսանդրովիչ, կաղնին արդեն հանված է, չէ՞։

Եմելյանովը գլխով համաձայնության նշան արեց։

— Նշանակում է նախկին տեղում նա չի ապրելու։

— Նա այժմ ոչ մի տեղ էլ չի կարող ապրել...— մռայլ պատասխանեց ծախորդ քնագետների հայրը։

. — Իսկ մենք կփորձենք, ճիշտ չէ՞, երեխաներ, փորձի համար...

Երեխաների դեմքերը պայծառացան։ Նրանց աչքերում շողացին հույսն ու երախտագիտությունը։

— Եթե փորձի համար է, փորձեցեք, իսկ ես գնում եմ իմ գործին,— ասաց Եմելյանովը։

— Ոչ, դուք դեռ մի հեռացեք, Նիկոլայ Ալեքսանդրովիչ, մնացեք և մեզ ցույց տվեք՝ որտեղ տնկել ծառը,— ասաց Լենինը։

Եմելյանովը ժպտաց և արդեն բարեսրտորեն ու կարեկցաբար ասաց.

— Ավելի լավ է տնկել լճի մոտ։

Տղաները և Լենինը ընտրեցին տեղը։ Եկավ տնկելու հանդիսավոր րոպեն։ Սերյոժան վազեց ցախանոց՝ բահ բերելու։ Վլադիմիր Իլյիչը մի քայլ ետ գնաց՝ թողնելով երեխաներին, որ նրանք զբաղվեն ծառատունկով։ Բայց ստիպված էր նորից իր վրա վերցնել ղեկավարի դերը, քանի որ եղբայրները, առանց մտածելու, կաղնին դրել էին փոսի մեջ և պատրաստվում էին թաղել։

— Սպասեցեք, բարեկամներ, այդպես մեր գործից բան դուրս չի գա,— քմծիծաղ տվեց Լենինը,— եկեք որոշենք երկրի կողմերով. ո՞րտեղ է հարավը։

— Այնտեղ,— պատասխանեց Սերյոժան՝ ցույց տալով Պետրոգրադի կողմը։

— Լա՛վ։ Իսկ այժմ տեսնենք անտառում կաղնու ո՛ր կողմն է դեպի հարավ եղել, և տնկենք նրան ճիշտ նույն ձևով։ Ես կարծում եմ դուք ինքներդ կարող եք որոշել։ Հարավային կողմի ճյուղերը միշտ երկար են լինում։ Երբ ծառը մեծանա, նրա հյուսիսային կողմը ավելի լավ կորոշվի, ծածկված կլինի մամուռով։

Տղաները չգիտեին, որ կաղնու կյանքում այս բոլորը նշանակություն ունի և զարմացած էին որտեղի՞ց գիտեր իրենց հյուրը այդպիսի մանրամասնություններ. չէ՞ որ նա անտառագետ չէ։

Սերյոժան, որպես ամենից մեծը, վերցրեց տընկին և իջեցրեց փոսի մեջ։

— Ճիշտ է, Սերյոժա,— գովեց Վլադիմիր Իլյիչը,— միայն դուք մոռացել՛եք անտառի հող ածել, ավելի լավ կլինի հողը բերել այնտեղից, որտեղ աճել է կաղնին։

Անտառի հողը անհրաժեշտ է ծառերի տեղա-



փոխման ժամանակ, որովհետև նրա մեջ սնկային արմատ կա, առանց որի ծառերը չեն կարող նորմալ աճել։ Ծառը նոր տեղում տնկելիս, միշտ օգտակար է այդպիսի հող շատ ունենալը։ Այդ հողը կօգնի բույսին՝ շուտով ընտելանալու և ամրանալուն։

Կոլյան ու Տոլյան վազեցին անտառ և երկար սպասել չտվին իրենց։ Հողով լի դույլը դնելով փոսի մեջ՝ տղաները կանգնած սպասում էին, թե ի՞նչ պիտի անեն հետո։

Վլադիմիր Իլյիչը Սերյոժային խնդրեց փոսից մի փոքր բարձրացնել տունկը, իսկ Կոլյային ու Տոլյային ասաց, որ բերած հողը լցնեն փոսի մեջ։ Հետո նա խնամքով վերցրեց մեկ արմատիկ, դրեց անտառի փափուկ բուսահողի վրա։

— Պետք է այսպես ուղղել բոլոր արմատիկները,— ասաց նա։— Հակառակ դեպքում նրանք կմխճճվեն և կխանգարեն միմյանց։

Տնկին լճի ջրով ջրեցին։ Վերադառնալով ցախատուն, Վլադիմիր Իլյիչը դարձավ իր հետևից եկող տղաներին.

— Դուք այսօր, բարեկամներ, կատարեցիք մեծ և բարի գործ։ Աճելով կաղնին՝ ձեզ համար լավ հիշատակ կթողնի։ Հիշում եմ, Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին գրում էր իր որդի Մաքսիմին.

«... Դու գնացիր, իսկ քո տնկած ծաղիկները մնացին և աճում են։ Ես նայում եմ նրանց վրա, և ուրախ եմ, մտածելով, որ իմ որդյակը իրենից հետո Կապրիում թողեց ինչ-որ լավ բան՝ ծաղիկներ»։

— Հիանալի է ասված...— մտազբաղ կերպով ասաց Եմելյանովը։— Ահա և դուք իմ որդիների հետ տնկեցիք այսօր մատղաշ կաղնին... Թող նա աճի և դառնա մեծ ու հզոր...

Բուրժուական ժամանակավոր կառավարության լրտեսները ամբողջ երկրում սկսել էին փնտրել Լենինին։

Մնալ ավանում, նույնիսկ ցախատան ձեղնահարկում, վտանգավոր էր Լենինի համար։ Բանվոր Եմելյանովը լճի մյուս կողմում խոտհարքի համար հողամաս վարձեց և այնտեղ մի քողտիկ կառուցեց։ Նա նավակով այնտեղ տեղափոխեց Լենինին։ Վլադիմիր Իլյիչը ապրում էր լճի մոտ, ֆինն գյուղացու անվան տակ, որպես հնձվոր։ Թփերի մացառուտում Եմելյանովը փորեց-բացեց մի փոքր հրապարակ, ստացվեց լավ տաղավար։ Անտառից նա երկու կոճղիկ բերեց, որոնք ծառայում էին Լենինին՝ որպես սեղան և աթոռ։ Իլյիչը իր աշխատանքի նոր տեղը կատակով անվանեց «կանաչ աշխատասենյակ»։ Միայն այս աշխատասենյակը ուներ մեծ թերություն. ամպի պես նրա էին խուժում մոծակները։ Նրանք հանգիստ չէին տալիս, մանավանդ գիշերները։ Միայն խարույկի ծխով էր հնարավոր դուրս քշել այդ անօրեններին։ Սակայն երկար ժամանակով չէր կարելի խարույկ վառել. կրակը կարող էր հրավիրել անկոչ հյուրերի ուշադրությունը։ Պետք էր համբերել։

Լենինը մի անգամ ասաց Եմելյանովին.

— Է՜հ, Նիկոլայ Ալեքսանդրովիչ, լրտեսներից մենք պահվեցինք, իսկ մոծակներից՝ ոչ։

Ապրելով քողտիկում՝ Վլադիմիր Իլյիչը չէր դադարում լարված աշխատել։ Քողտիկից նա ղեկավարում էր զինված ապստամբության պատրաստումը, աշխատում էր նոր գրքի վրա, լրագրերում հոդվածներ էր գրում։

Աշխատելու համար ամեն օր նրան անհրաժեշտ էր տարբեր տեսակի գրականություն։ Այդ գրականության տեղ հասցնելը հանձնարարված էր Լենինի պատանի բարեկամներին, որոնց հետ նա վերջերս տնկում էր կաղնին։

Քողտիկի մոտ պահպանվում էր մշտական հերթապահություն, որպեսզի հնարավոր լիներ վտանգի դեպքում ժամանակին զգուշացնել Վլադիմիր Իլյիչին։ Գուցե որևէ մեկը պատահմամբ

այստեղ ընկնի և տեսնի տարօրինակ «հնձվորին», որը գերանդին ձեռքն անգամ չի վերցնում, այլ ամբողջ օրերով նստում է գրքերի առաջ։ Հերթապահի դերը հաճախ կատարում էր Կոլյան Որպեսզի ոչ մի կասկած չառաջացնի, նա խոտ էր հնձում բացատում, փոցխով հավաքում էր չոր խոտը, ձուկ որսում։ Նրա աչքերը միշտ աչալուրջ կերպով նայում էին չորս կողմ։ Երբ մոտենում էր հանգստացողներից որևէ մեկը, նա երաշտահավի նման շվշվացնում էր.

— Ճի՜տ-վի՜տ, ճի՜տ-վի՜տ։

Այդ ազդանշանով Կոլյայի հայրը դուրս էր գալիս թփերի միջից և հանդիպում Լենինի մոտ եկող մարդուն։ Եթե մոտեցող անծանոթ մարդ էր հայտնվում, Կոլյան ճայի նման տագնապալի կանչում էր.

— Կր՜ռ-ռ-ռ, կր՜ռ-ռ-ռ...

Սա տագնապի ազդանշան էր, որ հայտնի էր նաև Վլադիմիր Իլյիչին։ Այսպիսի դեպքերում նա պահում էր իր թղթերը, կեղծամ հագնում, գերանդին վերցնում ձեռքը և գնում խոտ հնձելու, թեև հնձել չգիտեր։

Մեկ անգամ նավակով հյուղակ բերին Սերգո Օրջոնիկիձեին։

Մացառներից դուրս գալով Եմելյանովը Օրջոնիկիձեի հետ նշանաբան փոխանակեց՝ պայմանական ազդանշանով, բարևեց և առաջնորդեց նրան հյուղակ։ Հենց քողտիկի մոտ Սերգո Օրջոնիկիձեին դիմավորեց «անծանոթ» մարդը և նույնպես բարևեց։ Օրջոնիկիձեն չոր պատասխանեց ողջույնին և անբավական դարձավ Եմելյանովին՝ ցանկանալով իմանալ, ո՞վ է այդ մարդը և ինչո՞ւ է գտնվում այստեղ։ Այդ ժամանակ «անծանոթը» թեթև խփեց Օրջոնիկիձեի թևին և ժպտալով գոչեց.

— Ի՞նչ է, ընկեր Սերգո, չե՞ք ճանաչում։

Օրջոնիկիձեն միայն այդ ժամանակ ճանաչեց Լենինին.

— Վլադիմիր Իլյիչ, մի՞թե այդ դուք եք։

Վլադիմիր Իլյիչը և Սերգո Օրջոնիկիձեն գրկախառնվեցին և գնացին հյուղակի կողմը։

Շուտով տեղի ունեցավ մի այլ դեպք։ Եմելյանովի խոտհարքից ոչ հեռու մի բանվոր իր տղայի հետ խոտ էր հնձում։ Ազդանշան տվող Կոլյան միշտ տեսնում էր հնձվորին, դրա համար էլ առանձին ուշադրություն չդարձրեց նրանց վրա և ուշացրեց ազդանշան տալ։ Բանվորը հայտնվեց ուղղակի Լենինի հյուղակի մոտ։ Վլադիմիր Իլյիչը այդ ժամանակ աշխատում էր, չհասցրեց թաքնվել և անհանգստացավ։ Հնձվոր բանվորը մոտեցավ Եմելյանովին, բարևեց և դառնալով դեպի հյուղակը հարցրեց.

— Այդ ո՞վ է ձեզ մոտ։

— Էն, մի ֆինն է։ Վարձել եմ նրան որպես հնձվոր։

— Ռուսերեն խոսո՞ւմ է։

— Ոչ։

— Իսկ չի՞ գա արդյոք ինձ մոտ աշխատելու։

— Ո՛չ, և մի՛ կանչիր։

— Ափսոս, ես հիվանդ եմ, իսկ որդիս մենակ չի կարող գլուխ բերել գործը։ Հնձվոր եմ փնտրում։

Երբ բանվորը հեռացավ, Վլադիմիր Իլյիչը կատակեց.

— Շնորհակալ եմ քեզնից, Նիկոլայ Ալեքսանդրովիչ, այն բանի համար, որ դու ինձ բանվորը չուղարկեցիր ուրիշի մոտ։

Սակայն այնտեղ Լենինի մնալը հյուղակում վտանգավոր էր։ Երեկոյան նրա համար բերեցին ֆիննական անձնագիր, և նա մեկնեց արտասահման։ Որպեսզի ոչ մի կասկած չառաջանա, Վլադիմիր Իլյիչին՝ իբրև հնոցապան ուղարկեցին շոգեքարշով։

Այն ժամանակվանից անցել են շատ տարիներ։ Բայց եթե ձեզ վիճակվի լինել Ռազլիվում, դուք այնտեղ, առաջվա պես, լճի ափին կտեսնեք ճողերից պատրաստված մի քողտիկ՝ ծածկված խոտով։ Նրա մոտ դրված են գերանդին ու փոցխը։ Շատ վաղուց հանգած խարույկի մոտ կա երկու եղանաձև փայտ, որից Վլադիմիր Իլյիչը կախում էր թեյնիկը կամ փոքրիկ կաթսան։

Լճի ափին աճեց, հզորացավ բազմաճյուղ կաղնին, որ տնկել էր Լենինը բանվորի երեխաների հետ միասին։ Կաղնին այնպես համառորեն աճեց և արմատներ արձակեց հողում, որ նրա համար այլևս սարսափելի չեն ո՛չ քամին, ո՛չ դաժան սառնամանիքը, ո՛չ շոգը։ Նա տիրական բարձրացել է լայն բացատում, քամուց օրորվում ու աղմկում են սաղարթները, որպես կենդանի հիշատակ այն օրերի, որ անց է կացրել լճի ափին մեր սիրելի Առաջնորդը։

Թարգմ. ՋԱՆՋՈՒՂԱԶՅԱՆ



# ԲԱԼԼԱԴ ՈՒՍՈՒՑՉԻ և ՉՈՒՎԱՇԻ Մասին

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Գլխին մի հին մորթե գլխարկ
Ու տրեխներ մեծ ոտքերին,
Չուվաշ տղան մեն ու մենակ
Սիմբիրսկ հասավ մութ գիշերին:

Գտավ դպրոցն ու հոգնատանջ
Կուչ եկավ նա դռների մոտ.
Մշուշն իջավ աչքի առաջ,
Ու խոր քնեց մինչ առավոտ:

Աշակերտներն առավոտյան
Մեջտեղ առան անծանոթին.
Մեկը քաշեց թևը երկար,
Մեկը կպավ հսկա ոտին:

Տղան թռավ, նստեց տեղում,
—Բարև՛,—ասաց,—ինձ կներեք...
Բայց ծաղրում են, ձեռ են առնում,
Չեն հասկանում չուվաշերեն...

—Բարև՛,—լսվեց...— Նայիր ով է՝
Շիկագանգուր մի պատանի.
Վլադիմիր Ուլյանովը՝
Պարծանքն ամբողջ դասարանի:

—Դու ինչու՞ ես այստեղ հասել.—
Նա չուվաշին հարց է տալիս.
—Սովորել եմ ուզում ես էլ.
Լրացել է քսա՛ն տարիս...

Թռվռում են շուրջը նրա
Աշակերտներ՝ ուրախ ու ժիր.
—Իսկ ռուսերեն գիտե՞ս, տղա՛:
—Ե՛յ, Վոլոդյա, դրան հուշիր՛:

Վոլոդյան խիստ զայրանում է.
Չէ՛, հոգու հետ թող չխաղան:
Չէ՞ որ նրանք ծիծաղում են.
Ճվարում է չուվաշ տղան:

Երևում է տեսուչն հանկարծ,
Տղաներն են արագ փախչում,
Ու Չուվաշն է մնում կանգնած,
Ինչպես թակարդն ընկած թռչուն:

Իսկ տեսուչը ո՞վ է, գիտե՞ք,
Վոլոդիայի հայրն է, որ կա.
Հիմա որդին կխնդրի,
Եվ չուվաշը դպրոց կգա:

Սիրտ են անում, ամեն կողմից
Մոտենում են, դիմում նրան.
—Նա եկել է հեռուներից,
Սովորել է ուզում տղան:

—Բայց նա շատ է մեծահասակ,—
Տեսուչն ասաց,—ինչպե՞ս անել...
Վլադիմիրն իսկույն հասավ,
—Խոստանում ենք առաջ տանել...

Ճրագի մոտ երկու ընկեր
Խոնարհվել են գրքի առաջ,
Ամեն մի տառ ամուր մի բերդ,
Հեշտ չէ առնել, բայց ի՜նչ արած...

—Լավ է, գործը լա՛վ է գնում,—
Վոլոդյան է՝ ա՛յ քեզ եռանդ.
Չուվաշ տղան թև է առնում
Ու գագաթն է հասնում լեռան:

Այստեղից նոր հորիզոններ,
Նոր բարձունքներ աչքի առաջ.
Դրսում գիշեր, ձմռան գիշեր,
Ու լուսինն է սահում սառած...

Ինչպես մեղուն ծաղկից-ծաղիկ՝
Անցնում էին նրանք արագ,
Ու դասից-դաս ու գրքից-գիրք,
Ի՜նչ գիրք, մի ողջ գրադարան...



Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

—Լա՛վ, թող լինի, չեմ առարկում:—
Թնդաց բակում զվարթ ուռան.
Ընդունել են, հասկանու՞մ եք,
Ու լաց եղավ չուվաշն ուրախ...

* * *

Ցուրտն է զարկում մտրակի պես,
Քամին ռնում հազարբերան,
Վառարանում կրակն ասես
Գալարում է երգը ձմռան:

—Լա՛վ է, լա՛վ է... —ու դպրոցում
Ետ չէր մնում չուվաշ տղան.
Ու տեսուչն էր ասում ծածուկ,
—Խոսքի տերն է մեր Վոլոդյան...

* * *

—Վլադիմիր,—չուվաշն ասաց,—
Սովորեցի կարդալ-գրել,
Սովորեցի լեզուն ռուսաց,
Գիտեմ անգամ լատիներեն:

Իմ լավ, փոքրիկ իմ ուսուցիչ,
Դու ինձ համար և՛ ուղեցույց,
Ե՛վ բարեկամ եղար դու ինձ.
Ինչպե՞ս լինեմ վարձահատույց:

Իսկ Վոլոդյան զվարթ ժպտաց,
—Հիմա,—ասաց,—թույլ տուր խնդրել,
Ընկերաբար, ո՛չ որպես վարձ,
Դասեր տուր ինձ չուվաշերեն:

—Չուվաշերե՞ն...—ապշեց տղան.—
Ինչի՞դ է պետք, չեմ հասկանում:—
Բայց Վոլոդյան սաստում նրան
Ու այսպես է պատասխանում.

—Լեզուն ազգ է, պիտի սիրել,
Իմաստության աղբյուր է նա,
Դասեր տուր ինձ չուվաշերեն,
Լավությունդ չեմ մոռանա:—

Ճրագի մոտ երկու ընկեր
Խոնարհվել են տետրի առաջ,
Դրսում գիշեր, ձմռան գիշեր,
Ջյուն է գալիս համատարած:

* * *

Հրաժեշտի օրը հասավ,
Ու հայրենի երկրից հեռու,
Չուվաշ տղան մեկնեց Կազան՝
Գիմնազիայում սովորելու:

Գնաց տղան: Ի՞նչ իմանար
Որ ուսուցիչն իր այն փոքրիկ
Պիտի փոխեր մի ողջ աշխարհ,
Տար չուվաշին և՛ գիր, և՛ գիրք:

Փոքրիկ չուվաշն ի՞նչ իմանար՝
Իրեն դասեր տվող տղան
Մեծ Առաջնորդ պիտի դառնար՝
Ուսուցիչը ողջ մարդկության:




ՆԻԿՈԼԱՅ ՏԻԽՈՆՈՎ

1

Լավն է Սամիի սահիբն[1] ու խելոք,
Միայն՝ մտրակով ծեծում է, վառում.
Լավն է Սամիի սահիբն ու խելոք,
Միայն՝ Սամիին մարդ չի համարում:
Նա մի աչքով է նայում Սամիին,
«Շնորհակալ եմ» չի ասում գոնե.
Սափրվելու ջուր տալիս է Սամին,
Սահիբի համար թամբում է պոնի[2]:
Եթե մազաչափ Սամին սխալվի,
Սահիբը, ինչպես Վիշնուն[3], կիմանա.
Եվ կռունկների վրա խեղճ Սամին
Ճիպոտի քանի՜ հարված կստանա...
Սակայն իզուր չէր, որ Բեջապուրում
Սամիի հայրը արագավազ էր,—
Որդու ոտներն են հիմա սովորում
Շուկաներով մեկ դես ու դեն վազել:

2

Այդ տարին չար էր,—խայթեց մի սև օձ
Կլորականջիկ պոնուն մոխրագույն.
Հեռախոսի մեջ լսվեց զրնգոց.
Այդ՝ չար ոգին էր այնտեղ աղմկում:
Սահիբը մի օր քնից շուտ զարթնեց,
Ուզեց լրագիր կարդալ այդ ժամին.
Զանգը այդ մասին շատ զրնգոց հայտնեց,
Սակայն լրագիր չբերեց Սամին:

Սահիբն, ստիպված, ուրիշին ասաց,
Որ ածիլվելու համար ջուր բերի,
Եվ, ինչ որ երբեք դեռ չէր պատահած,
Գարի չկերած՝ դուրս գնաց պոնին:

3

Սամին ետ եկավ յոթ օրից հետո,
Ինչպես իր հոտից բաժանված այծիկ.
Եկավ վիրավոր, արնոտած ոտով,
Ցնցոտիներով, նիհարած՝ քաղցից:
Ուռուցքի վրա բիծն էր կապտասև,

---
[1] Սահիբ—տեր, պարոն
[2] Պոնի—փոքր ցեղի ձի
[3] Վիշնու—հնդկական աստված

Ինչպես դրոշմն է միշտ ոսկու վրա...
Սամին սահիբի մի աչքն էր տեսել,
Արդ տեսավ երկու աչքերը նրա:
«Ո՞ւր էիր կորել դու, պոչատ կապիկ»—
Հարցրեց սահիբը իր ճոճաթոռից:
Եվ պատասխանեց Սամին հանդարտիկ.
«Ես վախեցա քո փշոտ ճիպոտից,
Ուզեցի գնալ մեծ իշխանի մոտ,
Ավելի մեծ քան բրամինն[1] ու ռաջան[2],
Բայց մոլորվեցի հովտում անծանոթ,
Ինչպես տանիքում կատվի ծագն անճար»։
«Դու ծնված ես միշտ հլու մնալու,
Ելնելու կանուխ՝ ջուր տալու համար,
Վազելու փոստը, ախոռ մաքրելու.—
Քո տերը ես եմ, կապիկ դու հիմար»:

4

Ջյուներից այն կողմ՝ սանդուխանման,
Որով կարծես թե մարդ երկինք ելնի,
Ապրում է նա մեծ քաղաքում հիմա,
Եվ մարդիկ նրան կոչում են՝ Լեննի[3]:
Նա հաց է տալիս մարդկանց սովատանջ,
Նա նույնիսկ գայլին մարդ է դարձնում:
Նա մեծ սահիբ է երկնքի առաջ,
Մտրակով երբեք նա մարդ չի ծեծում:



Նկ. Ֆ. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

Սամին զավակն է ցեղի Մագրատյան,
Բայց նրա համար ցեղը կթողնի,
Եվ սափրվելու ջուր կտա նրան,
Կվազի փոստը, կմաքրի պոնի:
Եվ դրա համար կտա մեծ Լեննին,
Այնքան ռուփիներ[4], իմաստուն խորհուրդ,
Որ դեռ չի տվել ոչ մի մարդ մեկին...
Սամին կջնջի տերերին անգութ»:

5

«Որտե՞ղ լսեցիր այդ, ողորմելի՛...»—
Քմծիծաղ տվեց խորամանկ Սամին.
«Այնտեղ, ուր մահն է ծեր ճերմակների,
Խոր կրպակների մեջ Ամրիտսարի...
Այն մարդկանց համար ամեն ինչ պարզ է,—
Գիտեն բանվորի մտքերը թաքուն,
Ռոխիլքենդում ծին գիտեն ինչ արժե,
Գիտեն ինչքան է Լեննին իմաստուն»...
«Դո՛ւրս կորիր»—գոռաց տեր անգլիացին:
Հաղթանակ տարած՝ հեռացավ Սամին:
Սահիբը մնաց մենակ, առանձին,
Դուրս չեկավ նույնիսկ իր ճաշի ժամին:

6

Եվ ծունկի եկած, խաղաղ ու ներհուն
Աղոթք էր անում Սամին մտահոգ,
Խնդիրք էր անում հեռավոր Լեննուն՝
Մեծ, անմեկնելի, ինչպես մի հոգ[5]:
Եվ նա Սամիի խնդիրքն էր լսում՝
Հեռու քաղաքում, որին թևաբաց
Թռչունը նույնիսկ երբեք չի հասնում՝
Անգամ փայլակից արագասլաց...
Թռչունն անձրևից կթրջվի անշուշտ,
Փիղը վազելուց մի օր կպնչի,
Եվ սահիբների կառքը հրաշունչ
Պիտի փշրվի, ինչպես ապակին։

7

Թեպետ և Լեննին հեռու էր այնքան,
Բայց լսեց նրա աղոթքը շուտով,
Ծնկաչոք աղոթք էր անում տղան՝
Խոշոր աչքերը լի արտասուքով:
Բայց ոտքի ելավ շատ թեթև ու ժի՜ր,
Ասես՝ ազդրերը յուղով էր օծել.
Երեկոն բույրով լեցուն դույլերն իր
Նրա թխավուն մարմնին կործեց:
Կարծես թե նորից նա ծնվեց կյանքում,
Այս անգամ արդեն մարդ էր պայքարող,
Եվ այնուհետև նրան մտրակով
Ո՛չ մի չար սահիբ ծեծել չէր կարող:

Թարգմ. ՎԱՂԱՐՇԱԿ ՆՈՐԵՆՑ

---

[1] Բրամին—հոգևորական

[2] Ռաջա—իշխան, կալվածատեր

[3] Լեննի—այդպես են արտասանում հնդիկները Լենինի անունը

[4] Ռուփի—հնդկական դրամ

[5] Իոգ—փիլիսոփա, գիտնական

# ԻԼՅԻՉԻ ՆԿԱՐԸ

*Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ*

*ԳԵՎՈՐԳ ԱԼԱԴՅՈՋՅԱՆ*

Ապրիլյան վաղ առավոտ էր. քաղաքը թաղվել էր ծիրանիների սպիտակ ծաղկեփրփուրի մեջ:

— Շտապենք, որ չուշանանք,— ասաց Հրայրը:

— Իսկ նկարը ինչպե՞ս էր, լա՞վ էր,— անհանգիստ հարցրեց Կարոն:

Ամենից լավ Թաթուլն էր. իմ մազերն էլ գանգուր են, իսկ հայրիկը հարթ է նկարել, ճակատիս վրա՝ ցից-ցից: Քո զգեստն էլ...

— Ոչի՜նչ...— երկարացրեց Կարոն, կարևորն այն է, որ նման ենք: Չէ՞ որ բոլորը կնայեն մեզ ու հիացած կասեն. «Տեսե՛ք, Կարոն, Հրայրը և Թաթուլը նկարվել են Լենինի հետ»:

Տղաները արագացրին քայլերը:

2

Դպրոցի նախասրահում ժխոր էր բարձրացել: Ներս մտնող աշակերտները անհանգիստ հետաքրքրությամբ դիտում էին պատին փակցված «Լենինը ու երեխաները» մեծադիր նկարը:

Առաջինը Նազիկն էր, որ իր սև, խոշոր աչքերը հառելով նկարին, բացականչեց.

— Վա՜յ, երեխե՛ք, մի տեսեք, Լենին պապիի կողքին մեր Հրայրն է...

— Ճի՛շտ որ, ինչ նմա՜ն է...— զարմացավ Մարոն,— այն կապույտ աչքերովն էլ կարծես Կարոն լինի:

— Խուճուճիկն էլ Թաթու՜լն է, Թաթու՜լը...— նորից ձայնը գլուխը գցեց Նազիկը:

— Ի՜նչ Թաթուլ, ի՜նչ Կարո...— առարկեց Սուրիկը,— ո՞վ կհավատա, որ Լենին պապին նման ծույլիկների հետ նկարվի:

— Ճիշտ է,— հաստատեց Մարոն,— Կարոն թվաբանությունը միշտ ինձանից է արտագրում ու հետո էլ սպառնում. «Կծեծե՛մ, թե մարդու բան ես ասել...»

— Իսկ Թաթու՞լը,— վրա բերեց Նազիկը,— գրավորից միշտ «երկու» է ստանում, իմ անունն էլ թութակ է դրել: Ի՞նչ անենք, որ դասերս շուտ եմ անգիր անում:

— Հրայրն էլ նրանց հետ ֆուտբոլ է խաղում, իսկ դասերը մենակ է սովորում:

— Դե, իհարկե, Լենին պապին նմանների հետ չէր նկարվի,— հաստատեց Սուրիկը:

Ճաշարանի դուռը նորից բացվեց: Երևացին Հրայրն ու Կարոն և ձևանալով, որ հավաքվածներին չեն նկատում, հպարտորեն ուղղվեցին դեպի աստիճանները: Նազիկն իսկույն կտրեց նրանց ճանապարհը:

— Մի բոպե սպասեցեք... Այդ ձե՞զ հետ է նկարվել Լենին պապին:

— Այո՛, մեզ հետ,— գոհունակ ժպիտով պատասխանեց Հրայրը:

— Քեզ չեմ հարցնում, այլ Կարոյին,— վրա բերեց Նազիկը:

— Ի՞նչ է, նախանձո՞ւմ ես,— հեգնեց Կարոն:

— Ե՛ս... այդ էր պակաս, որ քեզ պես ծույլիկին էլ նախանձեի...

Այդ պահին ճաշարանի դուռը շրխկոցով բացվեց ու գիրուկ Թաթուլը շտապելուց փռվեց դռների մեջ. գրքերը թռան պայուսակից, թանաքամանը գլորվեց







և նախշելով՝ հատակը՝ դիպավ պատին ու փշրվեց: Սրահը թնդաց անզուսպ ծիծաղից:

— Ա՛յս էլ ձեր Թաթուլը,— ժխորի մեջ լսվեց Նազիկի ձայնը:

— Վա՜յ, մի տեսեք, Լենին պապին էլ է ծիծաղում,— զարմանքով բացականչեց Մարոն:

Իրարանցումը հանկարծակի դադարեց. երեխաներն իրենց վառվռուն աչիկները հառեցին նկարին, որտեղից, կարծես իրոք լսվում էր Առաջնորդի ջերմ ու վարակիչ ծիծաղը:

— Այս ի՞նչ իրարանցում է, ինչու՞ եք աղմըկում,— հանդերձարանից դուրս ելնելով՝ ասաց ուսուցչուհին:

— Ընկեր Արուս, Լենին պապին ծույլիկների հետ կնկարվե՞ր,— վրա տվեց Նազիկը:

— Հանգստացե՛ք, հանգստացե՛ք,— ասաց ուսուցչուհին:— Ապա, լավ նայեցեք նկարին: Մի՞թե չեք նկատում, որ Վլադիմիր Իլյիչը թեքվել և Կարոյի, Թաթուլի ու Հրայրի ականջին շշնջում է. «Ամաչեցե՛ք, տղաներ, բոլորը ծիծաղում են ձեզ վրա... Այդ լավ չէ... Պետք է միմյանց սիրել ու օգնել, իսկ ժամանակը զուր չկորցնել: Պետք է սովորել, սովորել, սովորել...»

Զանգը հնչեց:

Ոչ ոք այն չէր լսում...

3.

Դասերը վաղուց վերջացել էին, բայց երեք ընկերները դասարանից դուրս չէին գալիս: Կարոն գլուխը դրել էր ձեռքերին ու ինչ-որ երգ էր մռմըռում: Թաթուլը, շուրթերն ուռեցրած՝ փորձում էր բռնել նստարանին պտտվող ճանճը, իսկ Հրայրը մտազբաղ, փորփրում էր ծաղկամանների հողը:

— Տեսեք միջանցքում ոչ ոք չկա՞,— ասաց նա տղաներին:

Կարոն մոտեցավ ու ականջը հպեց դռանը:

— Ո՛չ:

Հրայրը վերցնելով պայուսակը՝ դասարանից զգույշ դուրս սահեց: Նախասրահում նա մեկ էլ վարանոտ նայեց Լենինի պայծառ ժպտացող դեմքին ու գլխահակ փողոց ելավ:

... Ընկերները լուռ հետևում էին նրան: Առջևից Հրայրը, նրա ետևից՝ Կարոն և ապա՝ Թաթուլը, հազիվ քարշ տալով պայուսակը: Թաթուլենց տան առաջ Հրայրը կանգ առավ ու ասաց.

— Ուղիղ ժամը 3-ին մեր տուն կգաք:

— Գնդակն էլ բերե՞մ,— հարցրեց Թաթուլը:

— Ի՞նչ գնդակ... ես ձեզ հետ ֆուտբոլ չեմ խաղալու... Թվաբանություն ենք պարապելու: Տետրերն ու գրքերն էլ չմոռանաք: Ու տեսեք հա՜, թե չեկաք, ինքս կգամ ու մի լավ կդնգսեմ:

— Լավ,— շշնջաց Թաթուլն ու բակ մտավ:

Նրանք շարունակեցին ճանապարհը: Կարոյենց պատշգամբի մոտ Հրայրը կրկնեց.

— Չմոռանա՜ս, ուղիղ ժամը 3-ին: Մենք դասերը միշտ միասին ենք պատրաստելու, պիտի լավ սովորենք: Ես խոսք եմ տվել:

— Ո՞ւմ,— զարմացավ Կարոն:

— Լենինին— ասաց Հրայրն ու դանդաղ հեռացավ:

# Աստղը

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ

1

Կար մի փոքրիկ տղա,
Անունը Դիսգում.
Ապրում էր նա հեռու
Մադրիդ քաղաքում:
Սրբում էր նա կոշիկ՝
Փողոցում նստած.
Ջեռքերով իր փոքրիկ
Վաստակում չոր հաց:
Գործատեղում տղան
Նստած էր մի օր,
Երբ մոտեցավ նրան
Մի թիկնեղ բանվոր:



Կոշիկները նրա
Տղան շուտ սրբեց,
Ու բանվորը թղթե
Մի դրամ տվեց:
Դրամի մեջ թղթե
Նկատեց տղան,
Մի գեղեցիկ աստղ՝
Լենինը վրան:

Շատ էր լսել տղան
Լենինի մասին.
Ու տեսել էր նրա
Պատկերը անգին:
Գիտեր, որ Լենինը
Հույսն է բանվորի,
Պաշտպանն է իր նման
Որբ մանուկների...

2

Երբ գնում է գործի
Տղան մի անգամ,
Նրա մոտ է գալիս
Մի գեր ոստիկան:
Ու սրբում է նրա
Կոշիկներն հանգիստ...
Բայց ոստիկանն ահա
Մռայլվում է խիստ:
— Որտեղի՞ց աստղն
այդ,
Ո՞վ է նվիրել...
Հը՛, փոքրիկ սատանա,
Ինչո՞ւ ես լռել...
Ու պոկում է կրծքից
Աստղը հնգաթև,
Նետում գետը մոտիկ
Շարժումով թեթև:

3

Տղան նշմարել էր
Ընկած տեղն աստղի.
Նա լավ լող տալ գիտեր,
Այնտեղ չէր թողնի:
—Բախտս պիտի
փորձեմ,—
Ինքնիրեն ասաց
Եվ ջրի տակ սուզվեց,



Շունչը խոր պահած:
Վայրկյաններ են
անցնում,
Նա դուրս չի գալիս.
Ափին կանգնած մարդիկ
Ջուր ձայն են տալիս:
Ջուրն է նետվում
իսկույն
Պատանի մի քաջ,
Տղին դուրս է բերում՝
Թևի տակ առած:
Տղան ուշքի գալիս,
Բացում է ափն իր,
Ու տեսնում են մարդիկ
Մի աստղ կարմիր:
Փակցնում է կրծքին՝
Աստղը իր փայլուն
Ու ժպիտը դեմքին՝
Գնում է նա տուն:

# ԼԵՆԻՆ ՊԱՊԻԿԸ ԵՎ ՓՈՔՐԻԿ ԲԺՇԿՈՒՀԻՆ



ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

*Փոքրիկ Գայանեն*
*Քարացել է լուռ,*
*Նկարն է դիտում*
*Աչքերով տխուր:*

*Ահա Լենինը՝*
*Ձախ ձեռքը կապած:*
*Ինչ-որ գրում է՝*
*Գլուխը հակած:*

*Սեղանի վրա՝ դեղի սրվակներ,*
*Բայց մոռացել է Իլյիչն այդ մասին:*
*Նա ամբողջ օրը տարված է գործով,*
*Մոտը մարդ չկա, որ գոնե ասի.*
*«Դուք դեռ հիվանդ եք,*
*Վլադիմիր Իլյիչ,*
*Դեղ ընդունեցեք,*
*Հանգստացեք քիչ»:*

*Գայուշի կապույտ, կապույտ աչքերից*
*Արցունք է հոսում:*
*Քնքուշ թաթիկով նկարն է շոյում*
*Ու կամաց խոսում:*

*Ես հարց եմ տալիս.*
*— Ինչու՞ ես լալիս...*

*Նա շշնջում է.*
*— Տես՝ վիրավոր է Լենին պապիկը...*
*Նկարի վրա թեթև դողում է*
*Փոքրիկ Գայուշի քնքուշ թաթիկը:*

*Շոյում է ձեռքը,*
*Շոյում է վերքը,*
*Կարծես ուզում է,*
*Որ շուտ լավանա:*
*Նա չի ցանկանում, որ Լենին պապին*
*Վիրավոր մնա...*

*Նկարն է շոյում կրկին ու կրկին,—*
*Ուզում է բուժել Լենին պապիկին:*



Նկ. Հ. ՄԱՄՅԱՆԻ

# ԵՂԲԱՅՐ ԴԱՐՁԱՆ

ՖՅԱՄԻԼ ՖՅԱԶԻՄՈՎ

Ադրբեջանը հին երկրներից մեկն է։ Նա զբաղեցնում է մի մեծ տարածություն՝ Կասպից ծովի ափերից սկսած, Կովկասյան լեռնաշղթայի երկարությամբ դեպի հարավ-արևմուտք՝ մինչև եղբայրական Հայաստանի ու Վրաստանի սահմանները։ Այս երկրում են Միլի, Մուղանի, Շիրվանի լայնատարած տափաստանները, գեղատեսիլ լեռներ, խիտ անտառներ։ Ադրբեջանի բերրի հողերում ամեն տեսակ մրգեր ու պտուղներ են աճում։ Երկրի լայնատարած հարթավայրերով անցնելիս՝ կտեսնես ծովի պես ծփացող ցորենի արտեր, աչքդ կշոյեն սպիտակ կնգուղավոր բամբակի անծայրածիր դաշտերը։ Մեր ռեսպուբլիկայի մերձարևադարձային գո-

# ՀԱՅԱՍՏԱՆ,

տում գտնվող Լենքորանում և Աստարայում աճում են կիտրոն ու նարինջ։ Ղուբայի այգիները ամեն տարի մեր պետությանը տալիս են տոննաներով խնձոր։ Պատահական չէ, որ Ղուբայի սպիտակ խնձորի համբավը հասել է ամեն տեղ։ Մեր սարերի կանաչ լանջերին, ծաղկաշատ ու խոտառատ դաշտերում արածում են ոչխարների, այծերի հոտեր, անասունների նախիրներ։ Բոլորին հայտնի են ապշերոնյան անուշահամ «շահանի» խաղողը, հիանալի նուռը։ Ամեն տարի տոննաներով բերք են տալիս նաև Շամախու, Աղստաֆայի, Բյուրդամիրի, Ղարաբաղի շրջանների խաղողի այգիները։

Ադրբեջանի հողը շատ առատ է նաև ստորգետնյա հարստություններով։ Ապշերոնյան թերակղզու նավթային բուրգերը անծայրածիր անտառներ են հիշեցնում։ «Սև ոսկի» կոչվող նավթը մեր հողում հոսում է աղբյուրի պես։ Հերոսական նավթագործները սանձահարել են նաև Կասպիական ծովը, իրենց կամքին ենթարկելով նրա խենթ ալիքները։





# ԱԴՐԲԵՋԱՆ...

Արդեն մի քանի տարի է, որ մեր նավթագործները «սև ոսկի» են հանում ծովի հատակից։ «Նավթային քարեր» կոչվող ծովային տեղամասում և նավթագործների ավանում եղողը հիացմունքով է դիտում նորաստեղծ նավթային բուրգերը։ Մեր Դաշքեսանի հանքերը գնալով զարգանում, ընդարձակվում են։

Ադրբեջանական ռեսպուբլիկան Սովետական իշխանության քառասուն տարիներին աննախընթաց զարգացման է հասել։ Նրա քարտեզի վրա ավելացել են նոր քաղաքներ, բանվորական ավաններ, մեր դաշտերին բերրիություն տվող ջրանցքներ։ Վերջին տարիների ընթացքում անճանաչելի է դարձել Բաքու քաղաքը, ուր կառուցվել են բազմահարկ բնակելի շենքեր, նոր դպրոցներ, մանկապարտեզներ, գիտության ու կուլտուրայի օջախներ, ստեղծվել են լայնարձակ հրապարակներ, գցվել են նոր պողոտաներ, պուրակներ, այգիներ։

Սովետական մարդիկ հզոր տեխնիկայի միջոցով մեծ հրաշքներ են կատարում։ Մի քանի տարվա ընթացքում կառուցվել են հոյակապ քաղաքներ։ Ուրախանում ես և մտածում՝ չէ՞ որ այս նորակերտ քաղաքի տեղը վերջերս անմարդաբնակ անապատ էր, որտեղ մոլեգնում էր ուժեղ քամին և փոշեծածկում ամեն ինչ, որտեղ վխտում էին սոված գայլերն ու աղվեսները, որտեղ օձերն էին սողում երաշտից ճաքճքված գետնի վրա։ Իսկ այսօր այս վայրերը ուրիշ պատկեր ունեն, մենք տեսնում ենք բազմահարկ շենքերով ու լայնարձակ փողոցներով քաղաք։ Այդպիսի քաղաքներից են Սումգայիթը, Ալի-Բայրամլին, Մինգեչաուրը, որոնք ստեղծվել են Հայրենական Մեծ պատերազմից հետո։

Առավոտյան պահերին շատ գեղատեսիլ են լինում Կասպիականի ափերը, փչում է հով քամին։ Ծայրեծայր երևում են քաղաքի մինչև ծովափ հասնող երկարածիգ փողոցները։ Մայթերի վրա ստվեր գցող ծառերի տերևները թեթևակի շարժվում են՝ առավոտյան մեղմիկ քամուց։ Խնուղիների խաչմերուկների տարբեր ուղղություններով իրար հետևից անընդհատ երթևեկում են բեռնատար ավտոմեքենաները։ Ծխում են հսկա գործարանների երկնասլաց խողովակները։ Գիշերային անդորրից հետո հետզհետե աշխուժանում են քաղաքի փողոցները։ Դա նորակառույց Սումգայիթն է։ Այստեղ ստեղծվել են ժողովրդական տնտեսության համար մեծ կարևորություն ունեցող գործարաններ։ Հսկա խողովակագլանման գործարանը մեր նավթահանքերի համար թողարկում է բարձրորակ խողովակներ։ Գործարանի արտադրանքը բավարարում է ոչ միայն Ադրբեջանի, այլև մեր Հայրենիքի արդյունաբերության ուրիշ շատ ճյուղերի պահանջները։

Սումգայիթում կառուցվել են նաև ալյումինի և սինթետիկ կաուչուկի գործարաններ, որոնցում աշխատում են հազարավոր բանվորներ և ծառայողներ։ Առաջներում Բաքվից Սումգայիթ գնում էին ավտոբուսով, իսկ հիմա Սումգայիթի և Բաքվի միջև աշխատում է էլեկտրական գնացք։ Սումգայիթ քաղաքում կա մի՛ մեծ հրապարակ՝ շրջապատված սաղարթախիտ ծառերով։ Հրապարակի կենտրոնա-

Նկ. Հ. ՄԻՆԱՍՅԱՆԻ

կան մասում բարձրացել է մեր հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինի վեհաշուք արձանը։ Մեծ մարդու պարզած ձեռքը կոչ է անում մեր ռեսպուբլիկայում ստեղծված արդյունաբերական նոր քաղաքի աշխատավորներին՝ է՛լ ավելի գեղեցիկ դարձնել կյանքը։

Սումգայիթի պիոներները տոն օրերին ծաղկեփնջեր են դնում առաջնորդի արձանին։

Ադրբեջանի երկրորդ մեծ քաղաքը Կիրովաբադն է։ Կիրովաբադը շատ հին պատմություն ունի։ Այստեղ կան հին դարերի շատ հուշարձաններ, գեղաքանդակ շենքեր։ Ոգևորված մեր պարտիայի 21-րդ համագումարի որոշումներով՝ Կիրովաբադի աշխատավորները ձգտում են էլ ավելի զարգացնել իրենց հինավուրց քաղաքը, դարձնել արդյունաբերական, գյուղատնտեսական և կուլտուրական կենտրոն։ Ներկայումս կյանքը եռում է Կիրովաբադի գործարաններում, ֆաբրիկաներում, կառույցներում և ամենուրեք։

Անճանաչելիորեն աճել, զարգացել են Ադրբեջանի նաև Մինգեչաուր, Ստեփանակերտ, Նախիջևան, Լենքորան, Ալի-Բայրամլի և Նուխի քաղաքները։ Այս քաղաքներից ամենաերիտասարդը Ալի-Բայրամլին է։ Մեր պարտիայի ու պետության կազմած հոյակապ յոթնամյա պլանում Ալի-Բայրամլին, շատ քաղաքների պես, մեծ ապագա ունի։ Ներկայումս այստեղ մեծ շինարարություն է տեղի ունենում, բարեկարգվում են փողոցները, տնկվում են ծառեր։



Հաճելի է նոր Ալի-Բայրամլին դիտել Նաջիբակուլ լճի ձախ ափին՝ Մուշով և Գրով լեռների միջև ընկած սարահարթից, որտեղից երևում են նորակառույցները։ Յոթնամյակում Ալի-Բայրամլին շատ է աճելու։ Հենց այժմվանից այս քաղաքը դառնում է մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական մեծ օջախներից մեկը։ Նոր խոշոր պետական ջերմաէլեկտրակայանը կառուցվում է շրջանային կենտրոնից 6—7 կիլոմետր հեռավորության վրա։ Այս մեծ էլեկտրակայանի շինարարները պատվավոր պարտավորություններ են ստանձնել՝ նրանք խոսք են տվել էլեկտրակայանը շահագործման հանձնել 1961 թվականին։ Ալի-Բայրամլիի ջերմաէլեկտրակայանը Մինգեչաուրի հիդրոէլեկտրակայանից երկու անգամ ավելի էներգիա կտա և կբավարարի նաև Հայկական ու Վրացական ռեսպուբլիկաների պահանջները։ Այսպիսով, կստեղծվի մեր երկրի հարավային շրջանների միացյալ էլեկտրացանցը։ Այս էլեկտրակայանը իր տեսակով կլինի Եվրոպայում առաջին, իսկ աշխարհում երկրորդ ջերմաէլեկտրակայանը։

Յոթնամյակի ընթացքում մեր քաղաքներում և գյուղերում երեխաների համար կառուցվելու են շատ դպրոցներ, մանկապարտեզներ, ֆիզկուլտուրայի հրապարակներ, մանկական արտադպրոցական հիմնարկներ։ Նրանց հանգիստը կազմակերպելու նպատակով գցվելու են նոր այգիներ ու պուրակներ։

Ադրբեջանի երեխաներն էլ՝ ոգևորված այս ամենով, նորանոր փառապանծ գործեր են կատարում։ Աղդաշի շրջանում մենք ունենք մի հիանալի կոլտնտեսություն։ Այստեղ կոլտնտեսության բոլոր աշխատողները պիոներներ են։ Աղդաշցիների նախաձեռնությունը գնալով տարածվում է Ադրբեջանի նաև այլ շրջաններում։ Այս տարի անցկացվեց աշակերտական արտադրական բրիգադների բրիգադիրների առաջին ռեսպուբլիկական հավաքը։ Հավաքույթին եկել էին եղբայրական ռեսպուբլիկաների, նաև Սովետական Հայաստանի ներկայացուցիչները։ Աշակերտական արտադրական բրիգադները նշանավոր երևույթ են մեր դպրոցներում։ Դրանց ստեղծումը մեծ դեր խաղաց պիոներներին ու դպրոցականներին հասարակական հանրօգուտ աշխատանքի մեջ ներգրավելու գործում։

Ադրբեջանի պիոներները մեծ հետաքրքրություն և ձգտում են ցուցաբերում նաև դեպի արդյունաբերությունը։ Նրանք հաճախ էքսկուրսիաներ են կազմակերպում դեպի ֆաբրիկաներն ու գործարանները։ Մեր մի շարք գործարաններում գոյություն ունեն պիոներական անկյուններ։

Մյուս ռեսպուբլիկաների բոլոր երեխաների պես Ադրբեջանի երեխաները նույնպես սիրում են քաջությունը, խիզախությունը։ Նրանք միշտ մեծ համակրանքով ու հարգանքով են վերաբերվում իրենց շար-



քերից ելած քաջ տղաներին։ Դուք լսած կլինեք հերոս տղա Թոֆիկ Հուսեյնովի մասին։ Նա ծովում խեղդվելուց փրկեց երեք աղջկա կյանք, իսկ ինքը հերոսաբար զոհ դարձավ մոլեգին ալիքներին։ Այժմ Թոֆիկ Հուսեյնովի անունն է կրում Բաքվի 134-րդ դպրոցը։ Պիոներներն ու դպրոցականները չեն մոռանում իրենց քաջ բարեկամին։ Մոտ ժամանակներս Խիզախ Թոֆիկի արձանը կկանգնեցվի ծովի ափին, որտեղ հերոսաբար զոհվեց նա։

Թանկագի՛ն բարեկամներ, այս փոքրիկ ակնարկով մենք ձեզ համառոտակի ծանոթացրինք մեր ռեսպուբլիկային, նրա առանձին քաղաքներին ու շրջաններին։ Արձակուրդի օրերին եկեք մեր ռեսպուբլիկան։ Ձեզ շատ դուր կգան մեր քաղաքները, գյուղերը, բերքառատ դաշտերը, այգիները։ Դուք մոտիկից կծանոթանաք մեր մայրաքաղաք Բաքվին, շատ բան կիմանաք և կուսումնասիրեք։ Բաքվում կան վիթխարի գործարաններ, քիմիական արդյունաբերությունն այնտեղ առաջադիմում է հսկայական քայլերով։ Բաքվի նավթից ստացվում է 95 տեսակ արտադրանք, որ գործադրվում է զանազան բնագավառներում։

Այժմ, Ադրբեջանում սովետական կարգերի հաստատման քառասնամյակի օրերին մեզ մոտ տոն է, ցնծություն։ Հայաստանի թանկագին բարեկամներ, եկեք մեզ մոտ հյուր, դրանով դուք կուրախացնեք ձեր ադրբեջանցի բարեկամներին։ Չէ՞ որ մենք եղբայրներ ենք, դարավոր եղբայրներ, ինչպես շատ լավ ասել է բանաստեղծ Ջեյնալ Ջաբարզադեն իր շատ տարածված երգում։

*Դարավոր եղբայրներ հուր երգերով,*
*Հավիտյան միացանք կուռ ձեռքերով,*
*Սիրով սիրտ բաց անում,*
*Տենչում ենք, բարձրանում,*
*Միասին հերկում ծով-ծով բերքերով:*
*Քուռ, Արազ, Արարատ,*
*Կյանքը ուրախ ու առատ,*
*Եղբայր դարձան Հայաստան, Ադրբեջան:*

## ԳԱՐՈՒՆ

*ԵՐՋ. ԱՌԱՔԵԼՅԱՆ*

Ծափ-ծիծաղով դու եկար,
Ջրերի խենթ կարկաչով,
Այգի-պարտեզ դու մտար՝
Ծաղիկներով, կանաչով:

Ամենուրեք, ուր մտար
Կյանքը ժպտաց, ծիծաղեց.
Իսկ արևը հրավառ
Ադամանդներն իր մաղեց:

Հավքերն անուշ երգեցին,
Դաշտը լցվեց երգերով.
Աչիկները բացեցին
Մանուշակները սիրով:

Անտառն ասես մանկացավ
Քո ժպիտով վարդագույն,
Ծերությունն իր մոռացավ,
Հսկա կաղնին հաստաբույն:

Ծափ—ծիծաղով դու եկար,
Ջրերի խենթ կարկաչով.
Մեր երջանիկ ու կայտառ
Մանուկների զիլ կանչով:

# Նա չի մեռել

ՖԻՔՐԵԹ ՍԱԴԻԿ

134-րդ դպրոցի հավերժական
աշակերտ ԹՈՖԻԿ ՀՈՒՍԵՅՆՈՎԻՆ

Օգնության են կանչում ծովից,
Ծովն է նետվում մեր Թոֆիկը:
Օգնության են կանչում նորից,
Ջուրն է ճողփում մեր Թոֆիկը:
Ալիքներն են փլվում վրան,
Եվ Գերայն է օգնում նրան:
Ալիքներն են գնում, գալիս.
Ջուրն է ճողփում մեր Թոֆիկը.
Եվ Ղափուրը սիրտ է տալիս.
Ջուրն է ճողփում մեր Թոֆիկը:
Հաղթում է նա ալիքներին,
Գալիս հասնում խեղդվողներին:

Նա գիտեր, թե ինչ է կյանքում
Ընկերոջը մահից փրկել,
Նա գիտեր, թե ինչ է մարդու
Կյանքի համար մահը գրկել...
Նա գիտեր, որ խոր ծովի մեջ
Մահն է նրեւ կանգնել ճամփին,
Նա գիտեր, որ հույսը կտրած՝
Լաց են լինում քույրերն ափին:
Ա՜խ, այս անգամ նա չդարձավ,
Քույրերն ափին լաց են լինում
Ու կանչում են.—Դարձիր, Թոֆիկ,
Սրտերի մեջ կսկիծ ու ցավ,
Հառաչում են,—դարձիր, Թոֆիկ:
Գնաց... գնաց... ու նա չեկավ:
Սուտ բան է դա, թե նա չեկավ:

Կոմսոմոլն իր բաց մարտիկին
Ամբողջ սրտով ասաց.—Կեցցե՛ս:
Ժողովուրդն իր քաջ զավակին
Խոր հավատով ասաց.—Կեցցե՛ս:

Նա չի մեռել, մեր սրտերում
Ջահ է դարձել մեր Թոֆիկը:
Պատանի էր, հիմա բարձր
Սար է դարձել մեր Թոֆիկը:
Նրա անունն այս աշխարհում
Պիտի հնչի հար ու հավետ.
Ամենքի հետ պիտի ապրի
Պիտի խոսի ամենքի հետ:

Օգնության են կանչում ծովից,
Ջուրն է մտնում մեր Թոֆիկը:
Օգնության են կանչում նորից,
Ջուրն է ճողփում մեր Թոֆիկը:
Ալիքներն են փլվում վրան,
Եվ գետն է օգնում նրան:
Ալիքներն են գնում, գալիս,
Ջուրն է ճողփում մեր Թոֆիկը,
Եվ Ղափարը սիրտ է տալիս,
Ջուրն է ճողփում մեր Թոֆիկը...

Ադրբեջաներենից թարգմ. Հ. ԳՐԻԳՈՐՅԱՆ



Նկ. Հ. ՄԱՄՅԱՆԻ



# ՆԱԽՐԱՊԱՆԻ ՏՂԱՆ

ՆԱՐԻՄԱՆ ՍՈՒԼԵՅՄԱՆՈՎ

Ագնվամորու թփերը կախվել էին ջրերի վրա։ Նասիբը տեսավ նրանց սև ողկույզները, կանգ առավ։

— Այս ագնվամորուց ես մի կուշտ պիտի ուտեմ,— ասաց, բարձրացավ ուռենին, նստեց այն ճյուղի վրա, որ ձգվում էր դեպի առվի մյուս ափը, և սկսեց քաշել սև ողկույզները։ Բայց հանկարծ խշխշաց եգիպտացորենի արտը և Նասիբը վախեցավ։ Նա կանգնեց ծառի ճյուղի վրա, վիզը երկարացրեց ու նայեց արտի կողմը։ Մարդաբոյ աճած եգիպտացորենի ցողունները օրորվում էին, բաժանվում իրարից։ Երբեմն էլ ինչ-որ խըրթխըրթոց էր լսվում։

— Թե որ վարազ եղավ, հաշիվս մաքուր է,— մտածեց Նասիբը, և մորին մնաց կոկորդում։— Եվ շուտով պիտի մթնի, ես ինչպե՞ս պետք է իջնեմ ծառից։

Նասիբը բարձրացավ ծառի կատարը և այնտեղից նայեց հեռու, սարալանջի ֆերմային։ Կոլտնտեսության նախիրը արածելով մոտենում էր ֆերմայի գոմերին։ Նախրի ետևից գնում էր Նասիբի հայրը, Օմար քիշին, երկար մահակը ուսին դրած։ Իսկ նրա հետևից գնում էր Բասարը՝ մի հսկա գամփռ։ Բայց նրանք շատ էին հեռու, իսկ եգիպտացորենի արտում քանի գնում խշխշոցը ավելի շատանում ու ավելի մոտիկից էր լսվում։ Նասիբը ուռենու ճյուղերը ետ տարավ ու ավելի ուշադիր նայեց եգիպտացորենի կողմն ու խաղաղվեց։ Եգիպտացորենի արտում իրենց կոլտնտեսության գոմեշներն էին։ Այո՛, նա իսկույն ճանաչեց իր հոր նախրի գոմեշները։ Ղումաշ անունով գոմեշը անխնա պոկոտում էր դեղին վարսավոր ցողունները, իսկ Թափալը ոտնատակ էր տալիս՝ արդեն կուշտ ուտելուց հետո։

— Լավ եղավ, գնալուց կնստեմ գոմեշին,— ինքնիրեն խոսեց Նասիբը, նորից նստեց դեպի ագնվամորու թփերը թեքված ճյուղի վրա ու շարունակեց քաշել ողկույզներն ու անուշ անել։

Տափաստանից արևը թռել էր։ Միայն հեռու լեռների կատարներն էին ներկված նարնջի գույնով։ Շուտով լեռների վրայից էլ թռավ արևը, և մթնեց։ Բայց ագնվամորին Նասիբին մոռացնել էր տվել ամեն ինչ։ Երբ կշտացավ, իջավ ծառից ու գնաց դեպի եգիպտացորենի արտը։ Գոմեշները չկային։ Նա չփնտրեց, մտածելով, որ գուցե նախրի հետևից գնացել են գոմերը։ Նասիբը եգիպտացորենից մի քանիսը դրեց գրպանը ու ճանապարհ ընկավ։ Նասիբը հասավ տուն։ Մայրը՝ Գանդափ խալան խանգալ[1] էր եփում։ Նասիբը շատ ուրախացավ, նստեց, ձայն տվեց մորը.

— Անա՛[2]։

— Ի՞նչ է, օղու՛լ[3]։

— Դե, խանգալից տուր ուտեմ, է՛լի։

— Ցավդ տանեմ, սպասենք հերդ գա։

Նասիբը երեսը դարձրեց գոմերի կողմը, կանչեց.

— Այ հեր, հե՜յ։

— Հե՜յ,— պատասխանեց հայրը։

— Անան խանգալ է եփել, եկ ուտենք, սառչում է։

Օմար քիշին անասունները գոմում տեղավորելուց հետո եկավ, բայց չնստեց։ Նա անհանգիստ էր։ Կինը հարցրեց.

— Ի՞նչ է պատահել։

— Դրսում անասուններ են մնացել,— ասաց։— Ղումաշ ու Թափալ գոմեշները չկան։

— Երևի գայլերի ձեռքն են ընկել,— կինը նույնպես անհանգստացավ։

---

[1] Խանգալ—կանաչեղենից կերակուր։

[2] Անա — մայրիկ։

[3] Օղուլ—տղաս։

— Կամ գայլերի ձեռքն են ընկել, կամ մտել են եգիպտացորենի արտը:

— Չեն կորչի, երևի մտել են եգիպտացորենի արտը,— ասաց Նասիբը:

Այդ ժամանակ հայրը տեսավ, որ նրա գրպանում եգիպտացորեն կա, զարմացած հարցրեց.

— Իսկ սրա՞նք որտեղից են:

— Քաղած թափած էր, հավաքեցի:

— Ճիշտն ասա, դու՞ չես քաղել:

— Ոչ, ես չեմ քաղել:

— Բա գոմեշները չտեսա՞ր այնտեղ:

— Տեսա, հայրիկ:

— Իսկ ինչու՞ չբերիր:

Նասիբը չպատասխանեց:

Օմարը գնաց գոմեշներին փնտրելու: Նա վերադարձավ ուշ, երբ բոլորը խաղաղ քնի մեջ էին: Արթուն էր միայն Գանդափ խալան: Նա դեռ տաք պահում էր խանգալը և աչքը ճամփին սպասում ամուսնուն: Օմար քիշին վերադարձավ, բայց տրամադրությունը խիստ ընկած էր: Գոմեշները չէր գտել:

* * *

Լուսացել, արևը բարձրացել էր հորիզոնից, երբ Նասիբը արթնացավ քնից: Նա հագավ շորերը ու հարցրեց մորը.

— Հայրիկը գտա՞վ գոմեշները:

— Ո՛չ,— տխուր պատասխանեց մայրը:

— Լա՛վ, դու ինձ մի քիչ մածուն տուր ուտեմ:

— Մածունը, ա՛յ, ափսեն լիքը դրված է սեղանին,— ասաց մայրն ու հանդիմանեց որդուն:— Օղուլ, ախր ինչպես ուտում են, այնպես էլ պետք է աշխատեն...

Նասիբը մածունը կուշտ կերավ ու գնաց երեկվա ազնվամորու հետևից:

Եգիպտացորենի արտում շատ մարդ կար հավաքված: Այստեղ էին կոլտնտեսության նախագահը, դաշտավարական բրիգադի բրիգադավարը, դաշտապահը և ուրիշ կոլտնտեսականներ: Օմար քիշին աչք-ունքը կիտած, հենված մահակին, կանգնել էր մի կողմ: Նասիբը մտածեց, որ երևի գոմեշները արտին շատ վնաս են հասցրել:

— Հը՛, քեռի Օմար, ախր դու փորձված նախրապան ես, այդ ինչպե՞ս պատահեց: Ժողովուրդը աշխատանք է թափել, վարել է, խնամք է տարել, իսկ դու մի օրվա մեջ անասունները քշել ես մեջը, փչացրել,— ասաց կոլտնտեսության նախագահը:

Նասիբը տեսավ, որ հայրը իրեն վատ զգաց, գլուխն ավելի ցած գցեց ու չպատասխանեց: Նա իր հորը երբեք չէր տեսել այդպես գլխահակ: Որպեսզի հայրը իրեն չնկատի, Նասիբը գնաց նստեց առվի եզրին, գլուխն առավ ափերի մեջ ու մտածեց. «Մի քանի ողկույզ ազնվամորու համար ես ինչպե՞ս իմ հորը գցեցի անհարմար դրության մեջ: Հիմա ես ինչպե՞ս պիտի նայեմ նրա երեսին»:

Արտում հավաքված մարդիկ գնացին: Օմարն էլ գնաց դեպի գետափ: Տղան հետևեց նրան: Օմար քիշին ոտնաձայներ լսելով ետ նայեց:

— Դու այստեղ ի՞նչ ես անում,— հարցրեց որդուն:

— Հայրիկ, թող ես էլ գամ քեզ հետ:

— Երեկոյան փակվե՞լ էին աչքերդ:

Նասիբը գլուխը կախեց:

— Լավ, արի,— զիջեց հայրը:



Նրանք գնացին դեպի գետափ, լուռ, առանց մի խոսք փոխանակելու։ Քայլում էին կանաչ, թաց խոտերի վրայով։ Այդպիսի տեղերում դժվար էր ոտնահետքեր գտնելը։ Բայց հայր ու որդի քայլում էին ու գոմեշի ոտնահետքեր էին փնտրում փարթամորեն աճած ու թաց խոտերի վրա։ Սարերում ուժեղ անձրև էր եկել, Քուռը ելել էր ափերից, լցվել դաշտը։ Վերջացավ կանաչ հովիտը և սկըսվեց ավազուտը։ Արևը վերևից կրակ էր թափում, կրակի պես վառում էր և ավազը։ Ավազուտում հատ ու կենտ ծառերի ստվերները երկարել էին։ Նասիբը հանկարծ կանգ առավ ու համարյա ճչաց.

— Հայրիկ, ահա՛, գոմեշների ոտնահետքեր...

Հայրը գլուխն օրորեց։

— Այո՛,—ասաց հայրը,—բայց այդ հետքերը գնում են դեպի գետը։ Տեսնու՞մ ես, չեն վերադարձել։

Նասիբի տրամադրությունը նորից ընկավ։ Օմարը ձեռքը դրեց ճակատին, նայեց գետի կողմը։ Ներքևում գետը բաժանվում էր երկու մասի։ Նա գնաց դեպի ցած և նստեց մի ծառի շվաքում, որ մի քիչ հանգստանա։

— Է՛, օղուլ, կար ժամանակ, որ գետի այս ափից այն ափը լողալն ինձ համար հեչ բան էր, իսկ հիմա... — Նա հայացքով ցույց տվեց պատերազմում հաշմված ձեռքը։— Ո՞վ գիտե, կարող է գոմեշներն անցել են մյուս կողմը, իսկ ես հիմա ջուրը մտնել չեմ կարող։

Տղան հուզվեց, աչքերը խոնավացան։ Հայրը շարունակեց.

— Իսկ դու քո հոր մասին չես մտածում, չես օգնում։ Օգնեիր՝ այսպես չէր լինի,—Օմար քիշին մի քիչ լռեց։—Իսկ ես քեզ վրա մեծ հույսեր ունեմ...

Նասիբը արագ ոտի կանգնեց, մի քիչ հեռացավ հորից, հանեց շորերը, կապեց գոտիով ու դրեց ծառի ճյուղերի արանքում, իրեն նետեց գետի մեջ։

Օմարը նայեց չորս կողմը, տեսավ որդին չկա, փնտրեց և հանկարծ տեսավ Նասիբի շորերը։ Նրան թվաց, թե կայծակը զարկեց իրեն։ Որդու շորերը գրկած վազում էր այս ու այն կողմը ու կանչում էր.

— Նասի՛բ, օղուլ, հե՜յ...

* * *

Քռի ափը ամբողջությամբ պատած էր ծառերով ու թփերով։ Այդ ծառերն ու թփերն այնպես էին խճճվել, խառնվել իրար, որ Օմարը որքան էլ ուզեց, որ այդ ծառերի արանքից նայի, տեսնի, թե ինչ եղավ իր որդին՝ չկարողացավ։ Նա մահակի ծայրով մի կերպ դեսուդեն արեց մոշի թուփը, շորերը պատառոտելով, երեսն ու ձեռքերը արյունոտելով ճյուղերի արանքից նայեց մոլեգնած գետին։ Նա տեսավ, թե ինչպես Նասիբը երևաց ալիքների վրա, կորավ, նորից երևաց ու հետո բոլորովին անհետացավ... Հետո ինչ արեց-չարեց, Օմար քիշին այլևս չկարողացավ տեսնել որդուն։

Իսկ Նասիբը կռվում էր կատաղած ալիքների դեմ, որ նրան տանում էին գետի հոսանքի հետ։ Երբեմն էլ ընկնում էր ջրապտույտի մեջ, սուզվում էր ջրի հատակը ու թվում էր վերջացավ... բայց ձկան պես նորից ելնում էր ջրի երեսը, նորից շարունակում էր լողալ դեպի ափը։ Ափն արդեն մոտ էր, բայց հոգնել էին Նասիբի թևերը և այլևս չէին ենթարկվում իր կամքին։ Նասիբը մի պահ թողեց, որ ձեռքերն հանգստանան, և սկսեց





Նկ. Ա. Լ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

լողալ միայն ոտների օգնությամբ: Ահա երևաց մի ուռենի, որ իր վարսերը կախել էր ջրի վրա: Նասիրը պարզ տեսնում էր ուռենու կանաչ ճյուղերը, որ կարծես օգնության համար էին փռվել գետի վրա: Նա լողաց դեպի այդ ուռենին, բռնեց ճյուղերից և ամբողջովին հանգստություն տվեց մարմնին: Այդպես մի քանի րոպե մնաց պառկած ջրի վրա, ապա այդ ճյուղերից էլ բռնելով դուրս եկավ ափ: Գետի մյուս ափում նա բարձրացավ մի փոքրիկ թմբի վրա ու բառաչեց գոմեշի պես... Ոչ մի արձագանք, ոչ մի ձայն: Բայց նախրապանի տղան չհուսահատվեց.

— Մինչև չգտնեմ, չեմ վերադառնալու հորս մոտ,—ասաց ինքնիրեն ու շարունակեց որոնումը: Նա վազում էր իրար խառնված թփերի արանքով, մինչև գոտկատեղը հասնող խոտերի միջով ու ամբողջությամբ տեսողություն դարած նայում էր չորս կողմը: Նա հանկարծ կանգնեց ու չհավատաց աչքերին: Գոմեշները արածում էին եղեգնուտի մեջ: Նա ծտի պես թռավ գոմեշների մոտ և քշեց գետի մեջ: Երբ գոմեշները մտան գետը, Նասիրը ինքն էլ մտավ գետը ու արագ բռնեց Ղումաշի պոչը:

Գոմեշները փնչալով, հանդարտ ու վստահ լողում էին գետում, մոտենում էին մյուս ափին, իսկ այնտեղ, սարսափը սրտի մեջ, որդուն փնտրող Օմար քիշին անհուն ուրախությամբ նայում էր այդ տեսարանին:

Ադրբեջաներենից թարգմ. Ս. ԱՅՎԱԶՅԱՆ

# ՇՈՒՏ ՄԵԾԱՆ

ՀԻՔՄԱԹ ԷՖԵՆԴԻԵՎ

Շատ էր սիրում Դիլարան
Մայրիկի հետ զբոսնել,
Շրջել այգի ու պարտեզ,
Տեսնել շենքեր բարձր ու վես,
Հրապարակ ու փողոց,
Ծովը, նավեր ու կրկես:

Ու մի օր էլ նա այդպես,
Մտած թևը մայրիկի,
Նայեց շուրջը, երկնքին,
Ծառին, ջրին, ամենքին,
Տեսավ փողոց մի բանուկ,
Ուր ծեր, ջահել ու մանուկ
Ծաղիկ ու ծառ են տնկում,
Հետո էլ աշխույժ կատակում:

Ահա մի տուն, մի նոր շենք,
Նոր ծառուղի, ծաղկանոց,
Ամենուրեք ծափ ու երգ,
Աշխատանքի մեղվանոց:
Եվ զարմացած, հիացած,
Հարցում արեց Դիլարան.
— Ասա՛, մայրիկ, մայրի՛կ ջան,
Այդ ովքե՞ր են քրտնաջան

Դատում, բանում ու երգում,
Շենքեր շինում ու ներկում:

Ո՞վ է շինել այս տունը,
Ի՞նչ է նրա անունը,
Ասա, գնամ բարևեմ,
Նրան մեր տուն հյուր բերեմ,
Նվեր տամ իմ տիկնիկը,
Խոսող ոսկե ձկնիկը:

Մայրիկ, ասա, այդ ու՞ր են
Լողում ծովի նավերը,
Ո՞վ է պահում երկնքում
Սավառնակի թևերը:
Ցույց տուր, մայրիկ այդ հերոս
Քեռիներին, բարևեմ,
Բարևեմ, մեզ հյուր բերեմ,
Նվեր տամ իմ տիկնիկը,
Խոսող ոսկե ձկնիկը:



# ԾԵՐՈՒՆԻՆ

ՄՈՒՐԱԴ ՄԵՄՄԵԴՈՎ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Ես գնում էի փոշոտ ու ամայի ճանապարհով: Արևի կիզիչ ճառագայթներից պաշտպանվելու համար գլխիս խակեն գլխարկ էի դրել: Մի քիչ քայլելուց հետո, գյուղը մնաց իմ հետևում: Ճանապարհի երկու կողմերում փռվեցին խաղողի այգիները: Այգիները ճանապարհից զատված էին խառնիխուռն քարերով հյուսված պատով: Այգիների արանքից խշշում էր ծովը:

Հանկարծ ականջիս մի քաղցր ձայն հասավ: Դա մի ժողովրդական մեղեդի էր: Երևի այս եղանակը երգել են ուղտերի քարավանները քշող ուղտապանները: Գնացի ձայնի ուղղությամբ: Ճանապարհի վրայի փարթամ ծառի ստվերի տակ մի մարդ տեսա: Երևի հենց նա էր երգողը: Դա մի ծերունի էր: Նստած էր ծառի տակ՝ սազը կողքին: Ծերունու՝ արևից վառված դեմքի վրա խառնաշփոթ, անթիվ անհամար գծեր էին գոյացել: Մետաքսի նման լայն մորուքը սպիտակել էր: Մենք բարևեցինք իրար: Ծերունին իր խոհեմ աչքերով նայեց ինձ:

— Բարով, տղաս,—ասաց,—եկ նստիր ստվերում, հանգստացիր: Սառը ջուր խմիր: Այսօր շատ շոգ է:



Մայրը ասաց.—Մանկի՛կս,
Խելոք, բարի աղջիկս,
Սովետական մարդն է այդ
Շինում փողոց, շենք ու մայթ,
Նավեր վարում, հող հերկում,
Աշխատանքի երգ երգում:

Միլիոնների միջից բյուր
Ոչ թե փնտրիր դու մեկին,
Այլ բոլորին, ամենքին:
Բոլորին ենք մենք սիրով
Շնորհակալ այս կյանքում,
Բոլորին ենք պարտական
Մեր գեղեցիկ քաղաքում:
Գիլարան այդ երբ լսեց,
Մի քիչ լռեց, մտածեց,
Կիտեց ընքուշ հոնքերը,
Տխուր թարթեց աչքերը
Եվ հարցրեց մայրիկին.
—Մայրիկ, ասա, իմանամ,
Ես ե՞րբ պիտի մեծանամ:

*Ադրբեջաներենից թարգմ.*
Շ. ՍԱՖՅԱՆ

Ես նստեցի ծերունու կողքին: Նա նորից քթի տակ իր մեղեդին էր մռմռում: Ուշադրությունս գրավեց ծառի տակի գերեզմանը: Նայեցի տապանաքարին:

— Հայրիկ,—ասացի, դիմելով ծերունուն,—սա ու՞մ շիրիմն է:

Ծերունին լուռ, նայեց փոշոտ ճանապարհին ու ապա կամացուկ պատասխանեց.

— Տղաս, այստեղ մի հիանալի մարդ է պառկած: Աստված լուսավորի նրա հոգին:

Ես խնդրեցի, որ նա պատմի այդ մարդու մասին:

Ծերունին նայեց գերեզմանի տապանաքարին, հետո սար, ամայի տարածությանը: Նա երևի հիշեց անցած-գնացած օրերը...

— Ա՜խ, տղաս, էս մեր կողմերի գլխին շատ փորձանքներ են եկել,—ասելով, ծերունին սկսեց նվագել: —Այստեղ, երբ սարսափելի քամի էր բարձրանում, դաշտերի ավազով էին ծածկվում տները, ճանապարհներն էին փակվում, քամին փչացնում էր խաղողի այգիները, ցամաքեցնում ջրհորները. ժողովուրդը ծովի աղի ջուրն էր խմում: Այս բոլորին չդիմանալով, մարդիկ հիվանդանում ու մեռնում էին: Ծովը խեր հո չէր: Խեզերի ծովածոցում բանի-բանի նավեր են խորտակվել: Ծովում ստորջրյա շատ ժայռեր կային: Անցյալում նավերին ճանապարհ ցույց տվող էլ չկար: Մշուշոտ եղանակներին նավերը բախվում էին ապառաժներին ու խորտակվում: Ովքեր էլ որ հազար չարչարանքներով կարողանում էին ափ դուրս գալ, նրանց էլ գազաններն էին հոշոտում: Այն ժամանակ վայրի գազաններն էլ շատ էին:

Մի սարսափելի մշուշոտ գիշեր, հենց այս ափում «Կուբա» անունով մի ռազմանավ է խորտակվել: Նավի անձնակազմից ոչ մեկը չի փրկվել: Նրանք շակել էին Խեզերի ծովային քարանցը: Բոլոր այդ թանկարժեք թղթերն էլ ոչնչացան: Հետո «Ամբուրան» հրվանդանում զոհվածների հիշատակը անմահացնելու նպատակով արձան կանգնեցրին: Գյուղից էլ ոչ շատ հեռու նավերին ճանապարհ ցույց տալու համար փարոս կառուցեցին: Իմ որդին էլ հաճախ գնում էր փարոսի կողմերը: Այնտեղ նա ծանոթացել էր ռուսների հետ: Նրանք էլ Գամբուրին մոտ ընկերներ էին դարձել: Գամբուրին հարազատի պես էին սիրում:

Հեղափոխության ամենաթեժ ժամանակն էր, 1917 թվականի նախօրյակը: Ստեղծվեց Բաքվի սովետական կառավարությունը: Ժողովուրդը ա-

զատ շունչ քաշեց։ Գյուղում ահ ու սարսափ տարածող Մեմմեդ բեյը տուզ արեց։ Նա ոչինչ հրապարակ էլ դուրս չէր գալիս։ Համագյուղացիներից էր փախչում, քանի որ նրանց գլխին անասելի խաղեր էր խաղացել։ Վատ մարդը իր օրում ծիծաղի երես չտեսնի, ասում են։ Այն օրվանից Մեմմեդ բեյի աղայությունն էլ, խաղողի այգիներն էլ ձեռքից գնացին։ Աղքատները այդ այգիները իրար մեջ բաժանեցին։ Ինձ էլ մի բաժին հասավ։ Միայն մեր այս ուրախությունը երկար չտևեց։ Մի տարի հետո Մեմմեդ բեյը նորից գլուխ բարձրացրեց։ Գյուղամիջի ջրերի մոտ հանդիպեց ինձ ու չարացած աչքերով չափչփելուց հետո ասաց։

— Է՜յ, տեկերների պետությունը արդեն փուլ եկավ։ Ես նորից խաղողի այգիներս վերցնելու եմ։

Մի օր հետո իմացանք, որ մուսավաթականները թուրքերի օգնությամբ Բաքվի բոլոր կոմիսարներին բանտարկելով, իրենց մուսավաթական պետությունն են հաստատել։ Տղաս, դու այդ բոլորը կիմանաս, երևում է կարդացած մարդ ես։ Բաքվի կոմիսարներին, այ, ծովի մյուս ափում գնդակահարեցին, այնպես չէ՞։

Ես գլխով հաստատական նշան արեցի։

— Այսպիսով, Մեմմեդ բեյը բոլոր խաղողի այգիները իր ձեռքը հավաքեց ու գյուղում նորից սկսեց աղայություն անել։

Մի անգամ, ինձ հանդիպելով, մտրակով սպառնաց.

— Դե դիմացիր տեսնեմ, բոլշևիկ...

Նեղ օրեր էին, ոչ ուտելու հաց կար, ոչ էլ վառելիք։ Իմ միակ որդի Դավիթը համարյա միշտ փարոսի կողմերն էր փախչում։ Փարոսում աշխատող ռուսները կերակրում էին նրան, դեռ տուն բերելու համար էլ բան-ման էին տալիս։

Մի գիշեր դուռս թակեցին։ Բաց արեցի։ Դեմս ջիփանի պես սիրուն մի տղա էր կանգնած, թևի տակն էլ ծրար կար։ Տղան կամացուկ ասաց.

— Ես Բաքվից եմ գալիս։ Փախել եմ։ Լսել եմ, որ դու լավ մարդ ես։ Հիմա անհրաժեշտ է, որ ձեր տանը մի մարդ թաքցնենք։

— Ներս անցիր,— ասացի,— կթաքցնեմ, մի՛ անհանգստանա։

Տղան ժպտաց։

— Երկար կյանք ունենաս, հայրիկ։

Նա ծրարը տվեց ինձ, դուրս եկավ ու՝ քիչ անց եկավ ընկերոջ հետ։ Երիտասարդի ընկերը կարծես ավելի տարեց մարդ էր։ Նա երկայնահասակ էր։ Սպիտակ մազերով։ Դեմքը ցորնագույն էր, իսկ աչքերը թափանցող։

Ես հյուրերիս սենյակ տարա ու տեղավորեցի, դուրս եկա, որ ծխեմ։ Մութ գիշեր էր։ Լուսինը երկնակամարում չէր երևում։ Հանկարծ մի ստվեր



նկատեցի։ «Ո՞վ կարող է լինել»—անցավ մտքովս։ Մեկ էլ ի՜նչ տեսնեմ՝ Մեմմեդ բեյն էր։ Մոտեցավ ու հարցրեց.

— Տունդ եկողը ո՞վ էր։

— Ո՛չ ոք...

— Սուտ մի խոսի, ես տեսա, որ տունդ մարդ եկավ։ Բոլշևի՞կ ես թաքցնում, հա՞։

— Ոչ ոքի ես չեմ տեսել, ոչ ոքի էլ չեմ թաքցնում,—ձեռքերս սկսեցին դողալ։

— Շատ բարի,—ասաց Մեմմեդ բեյը և քմծիծաղով ավելացրեց,—առավոտյան հաշիվը կմաքրեմ, միայն քեզ համար վատ կլինի։

Մեմմեդ բեյը գնաց։ Իսկ ես ամբողջ գիշերը դրսում նստած մտածում էի. աչքերիս քուն չէր գալիս։ Լուսաբացին հյուրերիս արթնացրի։ Հայտնեցի Մեմմեդ բեյի գալն ու ինձ սպառնալը։ Նրանք մտածմունքի մեջ ընկան։ Երիտասարդը ժպտալով, ասաց իր ընկերոջը.

— Ընկեր, դուք պետք է գնաք։ Ես կմնամ,



դուք անպայման պետք է գնաք։ Չէ՞ որ մեզ Մեմմեդ բեյը տեսել է։

— Ո՛չ,— ասաց տարիքով մարդը,— քեզ կսպանեն։ Տանտիրոջն էլ չեն խնայի։

— Ո՛չ,— ընկեր, ես պետք է մնամ, իսկ դու փախիր։ Գուցե քեզ չգտնեն... եթե տանտիրոջից չկասկածեն։ Հենց դրա համար էլ տանտերը ինձ պետք է հանձնի նրանց ձեռքը։

— Ի՞նչ,— ապշած հարցրի ես։

— Այո,— երիտասարդը ժպտաց,— ինձ կտանես Մեմմեդ բեյի մոտ։ Կասես, որ ինձ բռնել ես այգում՝ երբ ես թաքնվում էի։ Ընկերը փարոսի կողմը կգնա։ Այնտեղ նրա համար ապահով կլինի։

Աչքերս մթնեցին։ Հուզմունքս չկարողացա զսպել՝ լաց եղա։

Ավագը գրկեց իր երիտասարդ ընկերոջը։ Նրանք եղբոր պես համբուրվեցին։ Հետո նա ասաց.

— Շատ ապրես, փաստաթղթերը տուր ինձ, նրանց մեջ Լենինի նամակն է Բաքվի բոլշևիկներին։

Նա անհայտացավ խաղողի այգիներում։ Մենք մնացինք երկուսով... Երիտասարդը ասաց.

— Հասկացա՞ր, հայրիկ։ Փարոսին մեր ավագ ընկերոջ կյանքն ինձ է հանձնել։ Ուրիշ ելք չկար։ Ես նրան ողջ-առողջ Բաքու հասցնելու համար, կյանքս էլ չպետք է խնայեմ։ Փարոսի հանձնարարականը պետք է տեղ հասցնել։ Թևերս կապիր ու ինձ Մեմմեդ բեյի մոտ տար, թե չէ բոլորս էլ կկործանվենք։ Քեզ էլ կսպանեն։— Ես նրան իմ որդու պես գրկեցի։ Ոտներս դողում էին... Գիտեի, որ այդ հիանալի մարդուն իմ ձեռքով մահվան դուռն եմ տանում։ Բայց ճարս ի՞նչ... Երիտասարդը սկսեց ինձ սիրտ տալ։

— Մի վախենա, հայրիկ, հենց որ Մեմմեդ բեյը մեզ տեսնի, ինձ մի լավ կապտակես։ Սիրտդ թող չցավի, տե՛ս, չմոռանաս։

Մենք մտանք Մեմմեդ բեյի տունը։ Բակում զինված մարդիկ կային։ Մեմմեդ բեյը նրանց մեջ էր։ Նա ոտքից գլուխ մեզ չափեց։ Ես, ձեռքս չորանար, խփեցի տղային։ Նա փռվեց ճանապարհի մեջտեղում։ Վեր կենալ չկարողացավ, որովհետև թևերը կապված էին։ Մոտենալով Մեմմեդ բեյին՝ ասացի.

— Ես չեմ ուզում, որ լավ մարդը հարամություն անի։ Սա է, որ ուզում էր թաքնվել... խաղողի այգու մեջ եմ բռնել։

Մեմմեդ բեյը ընկերաբար ձեռքը դրեց ուսիս։

— Դոչաղ ես,— ասաց— գալիս էինք քո տունը խուզարկելու։ Ես կարծում էի, թե բոլշևիկների հետ համախոհ ես։

Երիտասարդը փոշու մեջ թաթախված գլուխը բարձրացրեց, թքեց ինձ վրա ու ասաց.

— Մատնի՛չ։

Ես կարմրեցի։ Ամոթից ու ցավից քիչ էր մնում լաց լինեի։ Նրանք երիտասարդին շատ չարչարեցին, հետո հենց այստեղ, ճանապարհի վրա գնդակահարեցին։ Ես հիմա էլ դեռ տեսնում եմ նրա աչքերը, մտքիցս դուրս չեն գալիս։ Իգիթ էր, իգիթ...

Դավիթը տուն եկավ գիշերը։

— Ամեն ինչ կարգին է, հայր։ Գիշերը, լուսնի լույսով, հենց ծառի տակ, փոս փորեցինք ու ջիվանի պես սիրուն տղայի դիակը թաղեցինք։

Ես էլ հենց այս նույն տեղում նստեցի ու տղամարդու պես լաց եղա։

Այս բոլորից հետո օրերս ավելի սևացան, գիշերներն էի միայն դուրս գալիս։ Մարդիկ թքում էին ինձ վրա ու գոռում.

— Դավաճա՛ն, ոճրագո՛րծ։

Մեմմեդ բեյը ինձ հանդիպելիս բարևում էր ու քեֆ—հալ հարցնում։

Այսպես անցավ երկու տարի։ Դավիթը ամեն օր գնում էր փարոս։ Նրան էլ բոլորը «դավաճանի» էին ասում։

Տարիներ հետո իմացա, որ այն ավագ ընկերը հենց նույն օրը ձկնորսական նավակով Բաքու է գնացել: Փառք տվեցի աստծուն: Ուրեմն Լենինի նամակն էլ տեղ հասավ: 1920 թվականի գարնանը, բոլշևիկները մուսավաթականներին ոչնչացնելով, նորից եկան Բաքու: Մեմմեդ բեյը ճղեց, ու ես չկարողացա նրա հետ հաշվի նստել:

Ավագ ընկերը օրերից մի օր եկավ մեր գյուղը: Մենք հարազատ բարեկամների պես հանդիպեցինք իրար: Միասին եկանք գերեզմանի մոտ: Լուռ կանգնել էինք: Ախ, տղաս, ի՞նչ կարող էինք ասել: Չէինք խոսում, մեր աչքերից միայն արցունքի կաթիլներ էին թափվում: Ավագ ընկերոջ դեմքին նայելիս մտածեցի. «Ո՞վ գիտե դու ինչեր քաշեցիր, հարազատս, մազերդ ձյունի պես սպիտակել են»: Հետո մի մեծ միտինգ եղավ: Ամբողջ գյուղը այնտեղ էր հավաքվել, մեծ-փոքր, բոլորը եկել էին: Ավագ ընկերը պատմեց այս երիտասարդի գնդակահարման պատմությունն ու իմ գլխին եկած փորձանքների մասին: Բոլորը հիացած իմ կողմը նայեցին: Ես միայն լաց էի լինում: Համագյուղացիներս եկան մոտս: Ձեռքս սեղմեցին ու շնորհակալություն հայտնեցին: Տղաս, սրանք վաղուցվա բաներ են... Հիմա մեր կողմերի մարդիկ բախտավոր են: Իմ Դաֆուրը նավապետ է: Իսկ ես արդեն բավական տարի է, ինչ գալիս եմ այս գերեզմանի մոտ, նստում այստեղ ու միտք անում:

Ծերունը լռեց ու խոր հոգոց հանեց: Թեթև քամին ծառի տերևները թրթռացրեց: Գերեզմանի շուրջը գունավոր խոտերն ու ծաղիկները դողացին: Քամին ծովի մաքուր օդը տարածեց չորս կողմի վրա:

Ադրբեջաներենից թարգմանեց՝ Թ. ՀԱԿՈԲՅԱՆ





Աշխարհագրական խմբակի օրագիր

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

## ՓԱՌԱՎՈՐ ՏՐԱԴԻՑԻԱ

### 1960 թվականի մարտի 6

Այսօրվա պարապմունքում նյութ ունեցավ մեր խմբակի ղեկավար ընկեր Պետրոսյանը: Նա ասաց, որ Հայաստանում կան նաև արդյունաբերական այնպիսի ճյուղեր, որոնք թեև ամենագլխավորները չեն, բայց հայտնի են ողջ Սովետական Միությունում և նույնիսկ արտասահմանում: Օրինակ՝ գինեգործությունը, մարմարը, պահածոները, ձուկը, գորգերը: «Արդյունաբերության այդ ճյուղերի գծով,— ասաց ընկեր Պետրոսյանը,— Հայաստանը հիանալի տրադիցիաներ ունի»:

Եվ ահա մենք որոշեցինք նախ մի քանի պարապմունք նվիրել այդ «հիանալի տրադիցիաներին», ապա մանրամասնորեն ուսումնասիրել ամենակարևորն ու գլխավորը:

Զավեն Բայանդուրյանին հանձնարարվեց նյութեր հավաքել գինու և կոնյակի մասին: Գարեգին Մուրադյանը զեկուցում կտա մարմարի մասին: Նունե Վարդանյանն ու Անահիտ Նակոսյանը հանձն առան խոսել պահածոների և գորգերի մասին: Կարո Օհանյանը նյութ կունենա Սևանի ձկան, թեթև ու սննդի արդյունաբերության տարբեր տեսակների մասին:

Խմբակի ավագ՝ ԱՐՄԵՆ ԱԼԱՎԵՐԴՅԱՆ

### 1960 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 13

Այս շաբաթում ես նյութեր հավաքեցի հայկական գինեգործության վերաբերյալ, իսկ երեկ մեր ամբողջ խմբակը գնաց կոնյակի գործարանը, որը գտնվում է Հաղթանակի կամուրջի մոտ: Շատ հետաքրքիր բաներ տեսանք: Այսօր տեղի ունեցավ խմբակի պարապմունքը: Զեկուցեցինք

ես ու Գարեգինը: Օրագրում կգրեմ ամենագլխավորը:

Նախ՝ գինեգործության պատմությունը: Կարմիր Բլուրը պեղելիս, հնագետները հայտնաբերել են գինու կարասներ, որոնց հատակին խաղողի կորիզներ են եղել: Դա նշանակում է, որ դեռևս երեք հազար տարի առաջ այստեղ զբաղվել են գինեգործությամբ: Այնուհետև, հին հունական պատմաբան Քսենոֆոնը մեր թվագրությունից առաջ հինգերորդ դարում իր «Անաբասիս» գրքում գրել է, որ Հայաստանում շատ լավ գինի են պատրաստում: Մեր թվագրության տասներերորդ դարի վերջում Հայաստանում եղել է հռչակավոր ճանապարհորդ Մարկո Պոլոն: Նա նույնպես գովում է մեր գինին:

Երևանում գինու-կոնյակի առաջին գործարանը հիմնադրել է վաճառական Ներսես Թաիրովը 1885 թվականին: Տասներկու տարի հետո նա իր գործարանը ծախեց մի այլ վաճառականի՝ Ն. Շուստովին: Շուստովը այդ գործարանի տերն էր մինչև այն օրը, երբ Հայաստանում հաստատվեցին սովետական կարգեր, և դուրս վռնդվեցին բոլոր բուրժույները:

Դրանից հետո գործարանն արագ թափով ընդարձակվեց, վերածվեց «Արարատ» տրեստի, որի մեջ մտնում են գինու և կոնյակի մի շարք գործարաններ ու կոմբինատներ: Ամենամեծը Երևանի Գինու կոմբինատն է: Այստեղ կան չորս հարկանի խոր նկուղներ, որոնցում պահվում է 10 միլիոն լիտր գինի:

Գործարանում տպավորությունների մի հետաքրքիր գիրք կա: Շատ պատվավոր հյուրեր են այստեղ այցելել. նշանավոր արտիստներ, արտասահմանյան պատվիրակներ, գիտնականներ: Այստեղ եղել են գրողներ Հանրի Բարբյուսն ու Մաքսիմ Գորկին: Ես արտագրեցի Մաքսիմ Գորկու տողերը. «Գինու մեջ ամենից շատ արև կա: Կեցցեն այն մարդիկ, որոնք գիտեն գինի սարքել և նրա միջոցով արևային ուժը լցնել մարդկանց հոգիները»:

Այժմ Կոնյակի գործարանի մասին: Առաջ այն մտնում էր Գինու կոմբինատի մեջ, իսկ հիմա առանձնացել և փոխադրվել է Հրազդանի մյուս ափին կառուցված նոր շենքը: Այստեղ ինքներս նայեցինք ամեն ինչ: Տեսանք տակառներ, որոնց մեջ պահվում է 1902 թվականի կոնյակ: Գործարանն ունի 13 հազար տակառ կոնյակ: Այստեղ մեզ ցույց տվին մի մեքենա, որն ինքնուրույն կերպով մեկ ժամում կարող է լցնել երկու հազար շիշ կոնյակ, խցանել և փակցնել պիտակը: Մեզ ասացին, որ մեր կոնյակը վաճառվում է ոչ միայն Սովետական Միությունում, այլև Հնդկաստանում, Չինաստանում, Չեխոսլովակիայում, Գերմանիայում, Ամերիկայում և ուրիշ երկրներում:

Վերջին տարիներին մեր գինիներն ու կոնյակները եղել են մի շարք միջազգային ցուցահանդեսներում ու տոնավաճառներում, որտեղ իրենց ապրանքներն են ցուցադրել աշխարհի բազմաթիվ երկրներ: Մեր սպիտակ «Մուսկատ»-ը երեք անգամ արժանացել է Ոսկե մեդալի: Երկու Ոսկե և մեկ Արծաթե մեդալ է ստացել «Դվին» կոնյակը: Ոսկե և Արծաթե մեդալների են արժանացել նաև հայկական այլ գինիներ ու կոնյակներ:

ԶԱՎԵՆ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Իսկ իմ զեկուցումը մարմարի մասին էր: Նյութեր հավաքելուն ինձ օգնեց մեր ջոկատավար ընկեր Համբիկը:

Հայաստանում կան մարմարի բազմաթիվ տեսակներ. բաց-գորշագույն, վարդագույն, կարմիր և սև, ոսկեդեղին ու սպիտակ գծանախշերով, որը ամենագեղեցիկն է համարվում: Մեր մարմարը օգտագործում են Երևանի, Մոսկվայի, Լենինգրադի, Սոչիի և այլ քաղաքների շինարարություններում: Մեր մարմարով էր երեսապատված Նյու-Յորքի միջազգային ցուցահանդեսի Սովետական տաղավարը:

Մարմարի հանքեր կան Մարմարաշենում, Խոր վիրապում, Արզաքանդում, Բջնիում, Ջարխեջում և այլ վայրերում: Վերջին ժամանակներս



Հրազդանի շրջանի Մխչյանս գյուղի մոտ հայտնաբերվել է շատ մաքուր սպիտակ մարմար: Մարմարի այս տեսակը հատկապես անհրաժեշտ է քանդակների համար: Մարմարի հանույթը մշակվում է Երևանի Մարմարի գործարանում, որից ստացվում



են շինարարական սալիկներ, թանաքամաններ մոխրամաններ և այլ իրեր։

ԳԱՐԵԳԻՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

## 1960 թվականի մարտի 20

Մեր այսօրվա պարապմունքը նվիրված էր պահածոներին ու գորգերին։ Իմ թեման էր՝ պահածոները։

Իհարկե, Հայաստանում պահածոներ սկսել են պատրաստել ոչ այնքան շուտ, ինչպես գինին։ Բայց 25—30 տարի առաջ մեր կոմպոտը, ջեմը, մուրաբան, բանջարեղենի պահածոները հռչակված էին արդեն ամբողջ Սովետական Միությունում։ Այն ժամանակ աշխատում էին միայն երեք գործարան՝ Երևանում, Այրումում և Մեղրիում։ Հայրենական պատերազմի տարիներին սկսեց աշխատել Հոկտեմբերյանի պահածոների գործարանը, որն ամենամեծն է ռեսպուբլիկայում։ Պատերազմից հետո երևան եկան ուրիշ գործարաններ, սկսվեց մսի և ձկան պահածոների թողարկումը։ Ձկան պահածոների մասին կխոսի Կարոն, դա նրա թեման է։

Վերջին ժամանակներս Հայաստանից մեծ քանակությամբ պահածոներ են ուղարկվում արտասահման։ Միայն անցած տարի Լեհաստան, Չեխոսլովակիա, Հունգարիա և այլ երկրներ ուղարկվել է մեկ միլիոն 270 հազար տուփ պահածո։

Այժմ մեր գործարանները տարեկան թողարկում են մոտ 100 միլիոն տուփ պահածո, իսկ յոթնամյակի վերջում կթողարկեն 30 միլիոնով ավելի։

ՆՈՒՆԵ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նունեից հետո ելույթ ունեցա ես։ Անցած պարապմունքին Զավենն ասաց, որ Քսենոֆոնն ու Մարկո Պոլոն գովել են հայկական գինիները։ Բայց նրանք գովել են ոչ միայն գինին, այլև հայկական գորգերը։ Մարկո Պոլոն, օրինակ, գրել է. «Հայերն ու հույները գործում էին աշխարհի ամենագեղեցիկ և նուրբ գորգերը»։

Դրանից էլ սկսեցի իմ զեկուցումը։ Հետո ասացի այն մասին, որ Սովետական իշխանության տարիներին գորգագործությունը մեզ մոտ շատ է զարգացել։

Անցած տարի Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան իր նորակառույց շենքի նիստերի դահլիճի համար պատվիրեց 64 քառակուսի մետր մեծությամբ մի գորգ։ Դա հայկական ամենամեծ գորգն է։

Մեր գորգերը լավ հայտնի են նաև արտասահմանում. 1937 թվականին ցուցադրվել են արվեստի և տեխնիկայի Փարիզի միջազգային ցուցահանդեսում։ 1955 և 1956 թվականներին հայկական գորգերը եղել են Լեհաստանի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Բելգիայի և Ավստրիայի միջազգային ցուցահանդեսներում ու տոնավաճառներում։ 1957 թվականին, երբ Լենինգրադում տեղի էր ունենում մորթեղենի միջազգային աճուրդ, Ամերիկայի, Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Կանադայի և այլ երկրների առևտրական ֆիրմաները գնեցին հայկական գորգեր։ 1958 թվականին Հայաստանի գորգերը արդեն մասնակցել էին արտասահմանյան 12 ցուցահանդեսների ու տոնավաճառների, իսկ Բրյուսելի համաշխարհային ցուցահանդեսում ստացան Ոսկե մեդալ։

Յոթնամյակի վերջում վեց անգամ ավելի շատ գորգ կարտադրվի։ Հանդես կգան 18 նոր արտելներ, իսկ Իջևանում կբացվի գործարանային գորգերի հատուկ կոմբինատ, որը տարեկան կտա 200 հազար քառակուսի մետր գորգ։

ԱՆԱՀԻՏ ԿԱԿՈՍՅԱՆ

## 1960 թվականի մարտի 27

Գինու, կոնյակի, մարմարի, պահածոների և գորգերի մասին արդեն ասել ենք։ Ինձ մնաց այսօր ասելու թեթև, տեղական և սննդի արդյունաբերության մնացած ճյուղերի մասին։ Զեկուցումս



Ֆոտո՝ Զ. ԲՇՏԻԿՅԱՆԻ

մեծ սնացվեց: Բայց կգրեմ շատ համառոտ և ամենակարևորները:

Սովետական իշխանության տարիներին կոշկի արտադրությունը մեզ մոտ աճել է 15 անգամ, անդրավերթերինը՝ 20, տեքստիլ-տրիկոտաժեղենինը՝ 70:

Բրդի, բամբակի և վուշի գործվածքներով Հայաստանը հռչակված էր դեռևս հնագույն ժամանակներում: Բայց իսկական տեքստիլ արդյունաբերություն չի եղել: Եվ դրա համար էլ Հայաստանի տեքստիլ արդյունաբերության ծննդյան օրը համարվում է 1924 թվականի հունիսի 15-ը, երբ Լենինականում տեղական բամբակից ստացվեց առաջին մետր գործվածքը: Այժմ Լենինականի կոմբինատը տարեկան տալիս է 60 միլիոն մետր գործվածք:

Պատերազմից հետո շարք մտան մետաքսի, մահուդի, տրիկոտաժի, կորդի և այլ կոմբինատներ ու ֆաբրիկաներ՝ Երևանում, Կիրովականում, Ստեփանավանում, Գորիսում, Ալավերդում և այլ վայրերում: Այժմ ունենք երեք կարի և երեք կոշկի ֆաբրիկա, կաշվի գործարան և այլ գործարաններ ու ֆաբրիկաներ:

Յոթնամյակի վերջում այս ձեռնարկությունների արտադրանքը կավելանա 40 տոկոսով: Կկառուցվեն նոր գործարաններ, որոնք կթողարկեն կապրոն, ապակեթել, բյուրեղապակի, հայելիներ և այլն:

Այժմ Սևանի ձկան մասին: Այդ մասին խոսեցի առանձին ես գտա ավելի քան հարյուր տարի առաջ լույս տեսած մի գիրք, որտեղ Սևանի ձկան մասին գրված էր. «Ձկան որսն այստեղ այնքան առատ է, որ վեր է ամեն տեսակի հավանականությունից. քարավանները գալիս են հաստատ համոզված, որ հաջող որս կլինի, բայց միշտ էլ սպասածից երկու անգամ ավելի ձուկ է դուրս գալիս»:

Այժմ Սևանը տարեկան տալիս է մոտ մեկ միլիոն կիլոգրամ ձուկ: Սևանի գեղեցկուհին՝ իշխանը հռչակված է աշխարհում: Հետաքրքրական է, որ Սևանից ձկնկիթներ տեղափոխելով, իշխան են սկսել աճեցնել Իսիկ-Կուլ լճում, ինչպես նաև Վրաստանի առանձին լճակներում:

Սևանի ջուրը վերջին ժամանակներս մասամբ օգտագործվում է դաշտերը ոռոգելու և հիդրոէլեկտրակայանի համար: Դրա համար պետք է այնպես անել, որ լճի ձկները չպակասեն: Արդեն կառուցված են և կառուցվում են հատուկ գործարաններ, որտեղ ձկնկիթից ստանում են ձկնիկներ և բաց թողնում լիճը:

ԿԱՐՈ ՕՀԱՆՅԱՆ



# Կռվարար շլդիկները

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Կռվարար ու խենթ
Երկու նապաստակ
Մի օր իրար հետ
Վիճեցին տաք—տաք:

—Արևս վկա,
Ա՛յ դու կաթ՛նակեր,
Ջուր տեղը եկա,
Դարձա քեզ ընկեր:

Դու ի՞նչ ես ինձ մոտ՝
Ջնչին մի մոծակ,
Իսկ ես՝ մի առյուծ,
Քաջ ու համարձակ:

—Ա՛յ քեզ պարծենկոտ,
Դու՞ ես համարձակ.
Գորտերից վախկոտ
Եղար լեղաճաք...

—Մի սրա՛ն տեսեք,
Ձի էլ ամաչում,
Գիշեր ու ցերեկ
Ստեր է փչում...
--Թող մեր երկուսից
Ով որ սուտ խոսի,

Բերանը մտնի
Խարդախ աղվեսի:—

Էս խոսքին՝ մեկ էլ
Եկավ աղվեսը.
—Ա՛յ կռվարարներ,
Մի եկեք դեսը:

Բա չե՞ք ամաչում,
Իրար հետ վիճում,
Աղվեսի պատվի՛ն
Ինչու եք դիպչում

Շլդիկներ՛ն հազիվ
Քիչ ուշքի եկան.
—Կատա՛կ արեցինք,
Աղվես բարեկամ...

—Կատա՞կ արեցիք,
Այդպես էլ կատա՞կ,
Ես էլ կատակով
Կտամ մի ապտակ...

Բայց հենց մի ապտակ
Քաջերը կերա՛ն,
Իսկույ՛ն լեղաճաք
Փախա՛ն ու կորա՛ն:

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ




№ 4 ԱՊՐԻԼ 1960

## ԵՐԿՐՈՐԴ ՇՆՉԱՌՈՒԹՅՈՒՆ

Ասում են, որ ջուրը ձկներին անհրաժեշտ է այնպես, ինչպես օդը՝ մարդուն: Այնուամենայնիվ, այդ կանոնն էլ ունի բացառություններ:

Ստորջրյա աշխարհի՝ իտալացի հայտնի հետազոտող Ֆրանկո Պրոսպերին ստացավ արտասովոր մի ծանրոց՝ չորացած տիղմի մեծ գունդ:

Երբ Պրոսպերին դանակով կոտրեց վերին շերտը, գնդից գլորվելով և ֆշշալով դուրս սրծավ խոշոր, գրեթե մեկ մետրանոց մի ձուկ: Շրմփալով գետնին, նա սկսեց կատաղի թռիչքներ կատարել, շրխշխկացնելով ատամնավոր երախը:

Դա պրոտոպտերուս էր: Ով էր նրան այդպես բանտարկել:

Մեղավորը պրոտոպտերուսի հայրենիքի՝ Կենտրոնական Աֆրիկայի կլիման է: Երաշտի շրջանում քաղցրահամ ջրամբարները, որտեղ ապրում է ձուկը, ցամաքում են: Պրոտոպտերուսը ստիպված է լինում երկար ժամանակ ապրել առանց ջրի: Հենց այս շրջանում էլ նրա մոտ առաջանում է երկրորդ շնչառությունը: Չէ՞ որ պրոտոպտերուսը պատկանում է երկկենցաղ ձկների դասին: Նա կարող է շնչել նաև մթնոլորտային օդը: Այս դեպքում նրա լողափամփուշտը վերափոխվում է յուրատեսակ «թոքի»: Երբ ջրամբարը ցամաքում է, պրոտոպտերուսը թաղվում է տիղմի մեջ, ոլորվում է, պոչային լողակով ծածկելով բերանի և քթի անցքերը ու աստիճանաբար պատվում լորձով, որը տիղմի հետ միանալով, ստեղծում է հուսալի պատյան: Այդ պատյանը նրան պաշտպանում է չորանալուց: Այսպես, պրոտոպտերուսը սպասում է մինչև անձրևների շրջանը. Երբ ջրամբարը նորից լցվում, և ջուրը քայքայում է պատյանը, պրոտոպտերուսը ազատվում է իր «բանտարկությունից» և վերադառնում դեպի հարազատ տարերքը:

## ՀԱՑ

Հազարավոր տարիներ առաջ, երբ մարդիկ դեռևս ապրում էին քարանձավներում, և նրանց միակ գործիքը սրված քարն էր, նրանց համար արդեն հայտնի էր ցորենը և հացը:

Նախնադարյան շրջանում տղամարդիկ զբաղվում էին որսորդությամբ, իսկ կանայք հավաքում էին զանազան արմատիքներ, տերևներ ու պտուղներ: Քարանձավների մոտ անզգուշաբար թափված հատիկները աճում էին: Մարդիկ նկատեցին, որ նրանք առատ բերք են տալիս, և սկսեցին սերմերը ցանել: Թարմ հատիկները կարելի էր ուտել, բայց չորերը չափազանց պինդ էին: Նրանք քարե կացիններով ջարդում էին հատիկները, խառնում ջրի հետ և ուտում: Հետո սովորեցին տաք քարերի վրա թխել հում խմորը:

Եվ ահա այսպես ստեղծվեց երկրի վրա առաջին հացը:

## ՓԱՍՏԵՐ

Այն բանից հետո, երբ մի շոտլանդացի հողատիրոջ անտառում շատ հաճախ էին մարդիկ գալիս խնջույք անելու և փչացնում էին ծառերը, նա անտառի եզրի ծառերից մեկին ամրացրեց հետևյալ մակագրությամբ տախտակ. «Զգուշացե՛ք, այս անտառում գտնվում է Կորիլիուս Ավելլանանա»:

Դրանից հետո այլևս ոչ ոք անտառ չէր գալիս: Շոտլանդացի հողատերը հանգիստ շունչ քաշեց և կարգին ծիծաղեց մարդկանց տգիտության վրա: Բանն այն է, որ սարսափելի Կորիլիուս Ավելլանանա անտառային ընկույզի լատինական անունն է:

1875 թվականին ամերիկացի հոգևորական Ռայտը կոլեջի դիրեկտորի հետ զրուցելիս, պնդում էր, որ գիտությունը զարգանալու այլևս տեղ չունի, քանի որ հայտնագործված է այն ամենը, ինչ կարելի էր հայտնագործել: Դիրեկտորը չհամաձայնեց:

— 15 տարուց հետո,— նկատեց նա,— մարդիկ կսովորեն թռչել այնպես, ինչպես թռչունները:

Զայրացած իր զրուցակցի այդ խոսքերից՝ հոգևորականը վրդովված հայտարարեց.

— Թռչել կարող են միայն հրեշտակները, իսկ դա վերագրել նաև մարդկանց, նշանակում է վշտացնել աստծուն:

Հոգևորականը ուներ երկու որդի՝ Օրվիլ և Ուիլբար անուններով, որոնք երեսուն տարի հետո կարողացան թռչել օդում, բայց ոչ թե որպես հրեշտակներ, այլ որպես աշխարհում առաջին ինքնաթիռներից մեկի օդաչուներ:

## ՁՄԵՐՈՒԿ

Ամենամեծ պտուղը ձմերուկն է, որի հայրենիքը Հարավային Աֆրիկայում գտնվող Կալահարի անապատն է: Այն տարիներին, երբ անձրևներ շատ են լինում, դաշտերը տառացիորեն ծածկըվում են ձմերուկներով: Իսկ ձմերուկ ուտում են փղերը, անտիլոպները, առյուծները, բորենիները, մկները: Վայրի ձմերուկի քաշը հազիվ 250 գրամ է, իսկ կուլտուրական ձմերուկինը՝ 10-ից մինչև 16 կիլոգրամ:




# ԳԱՎՐՈՇԸ ԻՐԱԿԱՆՈՒՄ ԳՈՅՈՒԹՅՈՒՆ Է ՈՒՆԵՑԵԼ

Վիկտոր Հյուգոյի «Թշվառներ» վեպի հերոսներից մեկը՝ Գավրոշը, իրոք գոյություն է ունեցել. 1832 թվականի հունիսի 5-ին և 6-ին Հյուգոն տեսել է Սեն Մերի փողոցի բարիկադային կռիվը, ներշնչվել 14 տարեկան մի պատանու արկածներից և կերտել հանրահայտ Գավրոշին:

Այդ դեպքից երեք տարի հետո իսկական Գավրոշը հայտնի գրող Ալեքսանդր Դյումային մի նամակ ուղարկեց, որի մեջ մանրամասն պատմում էր, թե ինչպես էր ինքը մասնակցել ռեսպուբլիկական ապստամբությանը:



Գեներալ Լամարկի թաղման օրը հայրը նրան Տամպլի բուլվարն էր ուղարկել՝ մի բան գնելու: Ամեն տեղ վրդովված խմբեր էին հավաքվել: Նա անմիջապես մասնակցեց այդ ցույցերին: Շուտով չորս կողմից կրակոցներ լսվեցին: Թագավորական հեծելազորը հարձակվեց ցուցարարների վրա. խեղճ երեխայի ոտքը մնաց ձիու սմբակի տակ և վիրավորվեց: Կաղալով նա շարունակեց ցույցերին հետևել: Բաստիլի հրապարակում, նա հանդիպեց իր ընկերներից Օգյուստին: Նա կատաղի ռեսպուբլիկական էր: Կռվողներից մեկը տղաներին խնդրում է, որ գնան իրենց տուն և մորը հանգստացնեն: Առավոտյան մեր հերոսը որոշեց ընկերոջ հետ տուն վերադառնալ: Բայց հետաքրքրությունն ու սարսափը հաղթահարելով՝ նրանք բարձրացան Սեն Մերի փողոցի բարիկադի վրա:

«Կորչի՛ Լուի Ֆիլիպը, կեցցե՛ Ռեսպուբլիկան» — գոչելով, նրանք գնդակներն էին հավաքում և վիրավորների վերքերը կապում:

Երբ թշնամին գրավեց բարիկադը, նրանք ուրիշ ըմբոստների հետ թաքնվեցին մի նկուղում: Սակայն թագավորական զորքերը շուտով նրանց գտան ու ծեծելով տարան գնդակահարելու: Բարեբախտաբար զորախմբի սերժանտը խղճաց ու երկու տղաներին փախչելու հնարավորություն տվեց:

...Մեր հերոսի ծնողները համոզված էին, որ իրենց տղան արդեն մեռել է:

«Բայց ես միայն հիվանդ էի:—Այսպես է վերջացնում Գավրոշը իր նամակը:—Հայրս ինձ անմիջապես անկողին դրեց. ուղեղի բորբոքումից հազիվ փրկվեցի»:

Սա փաստորեն Գավրոշի իսկական պատմությունն էր, որից ներշնչված Վիկտոր Հյուգոն ստեղծեց բոլորիս համար թանկ, փոքրիկ հերոսի կերպարը:

Զ. ԿԱՐԱՄԱՆՅԱՆ

## Գիտե՞ք, որ...

...սովորական ծղրիդը կարող է ծառայել որպես բավական ճշգրիտ ջերմաչափ: Ինչպես հայտնի է, ծղրիդը երգում է որոշակի պարբերությամբ: Նկատված է, որ ինչքան բարձր է օդի ջերմաստիճանը, այնքան նրա ճռռոցի հաճախականությունը մեծանում է:

Օդի ջերմաստիճանը որոշելու համար, հարկավոր է հաշվել, թե քանի անգամ է ճռռում ծղրիդը 15 վայրկյանի ընթացքում և ստացված թվին գումարել 37: Արդյունքը ցույց կտա օդի ջերմաստիճանը ըստ Ֆարենհեյտի ջերմաչափի:

* * *

...«Պատերազմ և խաղաղություն» կինոնկարը նկարահանվել է երեք կինոստուդիաների միացյալ ջանքերով 210 օրում, որտեղ մասնակցել են 86 նշանավոր դերասաններ, իսկ մասսայական տեսարաններում՝ 120000 մարդ: Նկարահանման համար պատրաստվել են և օգտագործվել 30000 բեղ, 10000 մորուք և 7 տոննա գրիմ:

## ՋԺԵՆ-ՑԶՅՈՒ

Ջժեն-ցզյուն կամ ասեղահարումը չինական ժողովրդական բժշկության հինավուրց մեթոդներից մեկն է: Ասեղահարումը օգտագործվում է նաև Կորեայում, Ճապոնիայում, Վիետնամում:

Դեռ հին ժամանակներից էլ չինացիները նկատել էին մի հետաքրքիր երևույթ: Վերքերը կամ պատահական ծակոցները բուժում են մարդկանց ներքին հիվանդությունները: Այսպես, վերին շրթունքի ասեղահարումը բուժում է եռօրյա դողէրոցքը: Եթե ձեռքի թաթն է վիրավորվում, ապա բուժվում է անքնությունը: Իսկ գլխացավերը անցնում են ախիլյան ջիլը ասեղահարելու դեպքում:

Հետագայում ասեղահարման նորանոր կետեր հայտնաբերվեցին: Մեր թվագրությունից առաջ 3-րդ դարում հրատարակվեց 18 հատորանոց «Խուանդի Նեյցզինը» ուր գտնվում էին ասեղահարման բոլոր հայտնի տվյալները:

Տան դինաստիայի շրջանում, մոտ հազար տարի առաջ, հանդես եկան բժիշկ-ասեղահարողներ, որոնք արդեն յուրօրինակ ասեղներ ունեին: Այդ ասեղները պատրաստված էին հատուկ պողպատից, արծաթից կամ ոսկուց:

Մեր օրերում հայտնի են մարմնի վրա գտնվող 693 կետ, որոնց վրա կատարում են ասեղահարումը:

Այդ կետերի ընտրությունը կախված է, թե՛ հիվանդությունից, և թե՛ նրա բնույթից: Ասեղահարումը ազդում է ամբողջ օրգանիզմի և նյարդային համակարգության վրա: Այս պատճառով էլ, երբեմն ասեղահարման կետը կարող է բավականին հեռու գտնվել հիվանդ օրգանից: Ասեղահարումը ցավ չի պատ-



ճառում, այլ միայն առաջացնում է ջերմության կամ ցրտի զգացողություն:

Ասեղածակման մեթոդը շատ լավ միջոց է նևրիտների, միկանային հողացավի, էկզեմայի բուժման համար: Հայտնի են դեպքեր, որ ծակոցների օգնությամբ



բուժել են բրոնխային շնչարգելությունն ու թութախտը:

Բայց մինչև օրս էլ բուժման այս հնութաքրքիր եղանակի էությունը լրիվ պարզ չէ: Վերջերս Մոսկվայում ստեղծվել է ասեղածակման ինստիտուտ: Իսկ մի քանի առողջարաններում բուժման այս մեթոդը արդեն կիրառվում է:

Այժմ սովետական և չինական գիտնականները միացյալ ջանքերով աշխատում են գիտական բացատրություն տալ ժողովրդական բժշկության այս հետաքրքիր մեթոդին, որը մեծ ապագա է խոստանում:

Ռ. ՄՈՎՍԻՍՅԱՆ
(Բժիշկ)

## ԲՐԻՆՁ

Երկրագնդի ազգաբնակչության կեսը սնվում է բրնձով: Եվ ամենից շատ բրնձի մշակույթով զբաղվում են Չինաստանում, Հնդկաստանում, Ճապոնիայում, Վիետնամում, Ինդոնեզիայում և Կորեայում:

Բրինձը ճահճային բույս է, և այն ցանում են ջրով լցված դաշտերում:

Բրինձը հարավ-արևելյան Ասիայի հնագույն մշակույթն է: Վաղուց ի վեր բրինձ են ցանում նաև Միջին Ասիայում և Անդրկովկասում:

Արաբների միջոցով բրնձի կուլտուրան անցավ Իսպանիա, որտեղից տարածվեց Իտալիայում: Ամերիկայում սկսեցին բրինձ ցանել 1493 թվականից:

Բրնձից ստացվում է ոչ միայն ալյուր և օսլա, այլև սպիրտ և գարեջուր:




## ԱՄԵՆԻՑ ԱՌԱՋ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

Մի անգամ հնուտինգենյան պրոֆեսոր Կլինկերֆուսը մասնակցում էր ուրախ խրախճանքի: Նա գիտեր, որ այնտեղ թերևս ինքը կհարբի և հետը գելտերյան[1] ջրով մի շիշ վերցրեց: Այնուամենայնիվ, լավագույն գինիները իրենց գործը արեցին: Վերադարձին Կլինկերֆուսը թռչում էր լուսնի շողերի վրայով, կարծելով, թե դրանք ջրափոսեր են և, վերջապես, պառկեց ու հանգիստ քնեց ուղղակի փողոցում:

Գիշերապահ ոստիկանը նկատելով փողոցում քնած գիտնականին, արթնացրեց և արդեն ուզում էր նրան տանել ոստիկանատուն, երբ Կլինկերֆուսը գրպանից հանեց գելտերյան ջրի շիշը և ոստիկանին ցույց տվեց պիտակի վրա գրված «Պահել պառկած վիճակում» բառերը:

Ոստիկանը չկարողացավ առարկել այդ պարզ տրամաբանությանը և ազատ թողեց գիտնականին:

1 Հանքային ջուր է:

## ԿԱՂԱՄԲ

Կաղամբ բառը ծագել է լատինական «կապուտ» բառից, որը նշանակում է «գլուխ»: Կաղամբը հայտնի էր հին եգիպտոսի բնակիչներին: Նրանք կարծում էին, որ կաղամբը բուժում է ամեն տեսակի հիվանդություններ: Երկու հազար տարի առաջ հռոմեացի Կատոնը գրել է. «Կաղամբը ամենալավ բանջարեղենն է: Եթե հում ես ուտում, ապա թրջիր քացախի մեջ, որից հետո դառնում է դյուրամարս»: Հռոմեացիք մեծ քանակությամբ կաղամբ էին գործածում, ոչ միայն իբրև կերակուր, այլև իբրև դեղ՝ բոլոր հիվանդությունների դեմ, անքնության, թունավորված ժամանակ, հարբած լինելու, գլխացավի, ստամոքսի հիվանդությունների դեպքում: Նրանց բժիշկները իշխաններին խորհուրդ էին տալիս կերակրվել կաղամբով: Միջնադարյան բուսաբան Բոկը գրում է. «Կարդյոք կաղամբից ավելի օգտակար բանջարեղեն»:

Սլավոնները կաղամբ էին գործածում դեռևս իններորդ դարում: Կաղամբի մասին հիշատակություն կա 1073 թվականին, իսկ մատենագրության մեջ ասվում է, որ Սմոլենսկի իշխան Ռոստիսլավը 1150 թվականին, իր բարեկամներից մեկին կաղամբի բանջարանոց նվիրեց:

Կաղամբը ամենից առաջ հայտնի էր իվիրացիներին, որոնք բնակվում էին այժմյան Իսպանիայում: Այստեղից կաղամբը տարածվեց Հունաստանում, Եգիպտոսում և Հռոմում:

Կաղամբի հյութը բարելավում է մարսողությունը: Այդ պատճառով կաղամբը ամենաօգտակար բանջարեղեններից մեկն է:

Անցյալ դարի վերջերին ամերիկյան Վիսկոնսին նահանգում մնաց հնդկական ցեղերից մեկի առաջնորդը: Ոչ մի վարպետ չկարողացավ նրա անունը տեղավորել տապանաքարի վրա, որովհետև այն բաղկացած էր 122 տառից:

— Առաջնորդի անունն էր.

Լեպոդոտեմաչոսելաչոգալեոոկրանիոլեիպսանոտրիումուպոտրիմմատոսիֆիոպարամելիտոկատակեցլումմենոկչլեյպկոսսուֆոֆատտոպերիստերալեկտորուոնոպ:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ Ն. ԱՆԴՐԵևԻ



ԱԶԱՏ

## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ ԱՍԵԼ...

Այս նկարի վրա տարբեր մեծության քանի՞ եռանկյունի կա:






| | | | |
|---|---|---|---|
| 9 | 4 | | |
| 12 | 5 | | |
| 6 | 11 | 9 | 14 |
| 9 | 10 | 8 | 3 |

Այս ֆիգուրը բաժանեք չորս հավասար և միանման մասերի այնպես, որ յուրաքանչյուր մասի թվերի գումարը լինի նույնը:

## ԱՀԱ ՄԻ ԹՆԱՆԿԱՐ...

Կարո՞ղ եք որոշել, նկարիչը նկարել է արևամո՞ւտը, թե արևածագը:






Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ., (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍԱՖՅԱՆ Դ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—41—83, 2—59—06:

ՎՖ 07126. Պատվեր 416: Տպաքանակ՝ 8000: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 5/IV 1960 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91: Գինը 2 ռ.

# ԽԱՉԲԱՌ

Գրված տառերի օգնությամբ վանդակների մեջ լրացրեք ձեզ ծանոթ ծաղիկների անունները։






ԺԱՄԵՐԻԴ

## ՓՈԽԵՔ ՏԵՂԵՐԸ

*Այս գծագիրը արտանկարեցեք մեծ թղթի վրա։ Երկու սև փուլ դրեցեք 1 և 2 անկյունների գագաթին, իսկ երկու սպիտակ փուլ՝ 15 և 16 անկյունների գագաթին։*

*Պահանջվում է սև ու սպիտակ փուլերի տեղերը փոխել, նվազագույն քայլեր կատարելով։*

*Քայլ համարվում է փուլի տեղաշարժը ուղիղ գծի մի ծայրից մինչև նրա մյուս ազատ ծայրը։*







*Կարո՞ղ եք գտնել միանման հագնված երկու ֆիգուր։*



